

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎԸ հոբելյանական նիստում ելույթ ունենալիս*

# ՑՆԾՈՒԹՅԱՆ ՕՐԵՐ

Գարունը երբեք այնպես շքեղ չէր եղել Երևանում, ինչպես այս տարի։ Մայիսը երբեք այնքան վառ ու լուսաճաճանչ չէր եղել, երբեք այնքան ծաղիկ ու ծիծաղ չէր տեսել, ինչպես այս գարնանը։ Երևանը երբեք այնքան հրճվանք ու ցնծություն չէր տեսել, ինչպես այս մայիսին։

Խնդությունը հորդում էր փողոցներով, վառ կարմիր ու ոսկի հագած՝ ծածանվում շենքերի կատարներից, շլացուցիչ կանաչով, յասամանի բուրմունքով և մանուկների երջանիկ կանչերով լցնում Երևանյան օդը։

Ուրիշ մայիս էր այս մայիսը, Հայաստանի սովետացման քառասնամյա տոնակատարության մայիսը, հայ ժողովրդի վերածնության քառասնամյակի մայիսը, որ պիտի ընդմիշտ մնա յուրաքանչյուր հայի հիշողության մեջ։

Ցնծություն էր, տոն այս մայիսին, և այդ տոնն ավելի պայծառ դարձավ, որովհետև Հայաստան

եկած հարյուրավոր հյուրերի մեջ էր նաև մեր պետության ու պարտիայի ղեկավարը, սիրելի Նիկիտա Սերգեևիչ Խրուշչովը։

Ահա թե ինչու մայիսի հինգին Երևանի ողջ բնակչությունը՝ մանուկ ու ծեր, տղամարդ ու կին ծաղկեփնջերով և երգ ու պարով դուրս էին եկել փողոց։ Ավելի քան տասնհինգ կիլոմետր երկարությամբ՝ Բարեկամության փողոցի և Ստալինյան պողոտայի աջ ու ձախ մայթերին, դեպի Նոր Օդանավակայանը տանող խճուղու եզրերին խմբվել էին մարդիկ։ Նրանք եկել էին դիմավորելու մեծ հյուրին։ Եվ երբ անցնում էր Նիկիտա Սերգեևիչի բաց մեքենան, ժողովուրդը որոտընդոստ ուռայով, շնորհակալության բուռըն խոսքերով ու ծափահարությամբ էր դիմավորում նրան։ Մեր պարտիայի և պետության ղեկավարը, խաղաղության մեծ մարտիկը, հայրաբար ժպտալով, իր հերթին ողջունում էր երևանցիներին։

Իսկ հաջորդ օրը օպերայի և բալետի թատրոնի դահլիճում բացվեց Սովետական Հայաստանի քառասնամյակին նվիրված հանդիսավոր նիստը։ Այստեղ ՀԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար ընկեր Զարոբյանի զեկուցումով ամփոփվեց մեր ռեսպուբլիկայի ձեռք բերած նվաճումները, նշվեցին մեր ժողովրդի հաջողությունները։ Հայաստանը, երբեմնի տնտեսապես հետամնաց Հայաստանը չտեսնված հաջողությունների է հասել, դարձել անճանաչելի։ Փոխվել են քաղաքները, փոխվել են գյուղերը, փոխվել է բնությունը։ Երբեմնի հողաշեն տներով գյուղաքաղաքի փոխարեն մեր Երևանը դարձել է ավելի քան կես միլիոն բնակչությամբ մի գեղեցիկ, ժամանակակից քաղաք՝ բարձր արդյունաբերությամբ, բարձր կուլտուրայով, հոյակապ շինություններով ու լուսավոր պողոտաներով։ Եվ այս բոլորը՝ քառասուն տարում, երբ հարյուրամյակների ընթացքում Հայաստանն այդպիսի առաջընթաց չէր տեսել, այս բոլորը շնորհիվ Հոկտեմբերյան Մեծ Ռևոլյուցիայի, որի համար իրենց կյանքը տվեցին նաև հայ ժողովրդի լավագույն զավակները։

Հանդիսավոր նիստում ճառ ասեց նաև սիրելի հյուրը, Նիկիտա Սերգեևիչ Խրուշչովը։ Ամբողջ դահ-

ՄԱՅԻՍ
№ 5 1961 Թ.



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
33-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

լինը ոտքի կանգնելով ողջունում էր նրան, ծափահարությունները ու ուռաները թնդում էին հսկայական դահլիճի կամարների տակ, անընդհատ ծափահարությունները ու ուռաները ուղեկցում էին նաև նրա ոգեշունչ ճառը, ուր խոսվում էր հայ ժողովրդի նվաճումների մասին, կոմունիզմի կառուցման գործին հայ ժողովրդի նվիրված մասնակցության մասին։ Ընկեր Խրուշչովը նշեց հայ ժողովրդի մատուցած մեծամեծ ծառայությունները մեր գիտության ու կուլտուրայի զարգացման գործին։ Թվով փոքր է հայ ժողովուրդը, ասաց նա, բայց ամեն մի բնագավառում, ամեն տեղ ունի իր ներկայացուցիչները, որոնք միշտ բարձր են պահում հայ ժողովրդի պատիվը։

Հայ ժողովրդի քառասնամյակի առթիվ ողջույնով հանդես եկան նաև եղբայրական մյուս ժողովուրդների ներկայացուցիչները, որոնց ջերմ ելույթները մեր Միության ժողովուրդների անխախտ բարեկամության փայլուն ցույց դարձան։

Հանկարծ դահլիճում խըրոխտ հնչեցին պիոներական շեփորները, ու թնդացին թըմբուկները։ Դրոշներով ու ծաղկեփնջերով դահլիճ մտան պիոներական շարքերը։ Դահլիճն ասես ավելի լուսավորվեց, ասես թե գարունը նորից բացվեց, այնքան ծաղիկ ու լույս բերեցին երեխաները իրենց հետ։ Հոկտեմբերիկները բարձրացան բեմ և ամբիոնի շուրջը մի գեղեցիկ ծաղկեփունջ կազմեցին։ Երեխաները իրենց անսահման սիրո խոսքն ուղղեցին Նիկիտա Սերգեևիչ Խրուշչովին, հայ ժողովրդին և խոստացան իրենց ուժերը մինչև վերջ նվիրել Լենինի մեծ գործին։ Ամբողջ դահլիճը հոտընկայս ծափահարում էր պիոներներին, կոմունիզմի ապագա խանդավառ կառուցողներին։

Հաջորդ օրը ռեսպուբլիկական ստադիոնը լեփ-լեցուն էր։ Մայրաքաղաքի աշխատավորների բազմահազար միտինգում ճառով հանդես եկավ Նիկիտա Սերգեևիչ Խրուշչովը, որին ժողովուրդը դիմավորեց բուռն խանդավառությամբ։

Հինգ օր մնալով Հայաստանում Նիկիտա Սերգեևիչ Խրուշչովը եղավ Հայաստանի մի շարք շըրջաններում, գործարաններում, հանդիպեց ռեսպուբլիկայի առաջավոր մարդկանց։ Ամենուր նրան ընդունում էին ցնծությամբ, զեկուցում ձեռք բերած հաջողությունների մասին։ Իսկ երբ հասավ մեկնելու օրը, Երևանի աշխատավորությունը դուրս եկավ ճանապարհ դնելու մեծ հյուրին, նրան, որն իր ձեռքում է պահում ամբողջ աշխարհի խաղաղության դրոշը։

Կայարանում Նիկիտա Սերգեևիչին ծաղկեփընջեր նվիրեցին նաև Երևանի պիոներները, որոնց նվիրած ծաղիկների թերթերում դրված էր նաև Հայաստանի բոլոր պիոներների սերն ու գորովանքը։



*Պիոներները ծաղկեփնջեր են մատուցում Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎԻՆ*

Լուսանկարները՝ Վ. ԵԳՈՐՈՎԻ և
Վ. ԱՄԱԼՅԱՆԻ (ՀՀԳ-ի ֆոտոխրոնիկա)

# ԱՅՍՕՐ ՔՈ ՏՈՆՆ Է

*ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱԶՅԱՆ*

Այսօր քո տոնն է փառապանծ,
Դու դարերում միշտ տառապած,
Հայաստան երկիր.
Այս առավոտ որոտաձայն
Քառասնամյա քո խնդության
Թմբուկը զարկի՛ր։

Այսօր ձայները մեր երգի
Թող որ հասնեն ծործից Նորքի
Արագած սարիդ.
Տոնենք այսօր, երգենք սրտանց,
Երգենք կյանք ու արև տեսած
Քառասուն տարիդ։

Լույս դարերի ուրախ ճամփորդ,
Երկինք նետիր խնդումդ հորդ՝
Բորբ սալյուտներով.
Թող վար թափվող աստղեր դառնան,
Որ մանուկներն ուրախանան
Այդ պայծառ հրով։

Գալիքներիդ հպարտ նայի՛ր,
Ողջ աշխարհին դու հմայի՛ր
Լույսով քո նոր տան.
Ողջ աշխարհին բարի մաղթող,
Կյանքում միշտ էլ մահին հաղթող,
Իմ մայր Հայաստան։

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ






**Գ**արուն է, կանաչ, ծիծաղկոտ գարուն: Լայն ու բարեբեր դաշտն է առջևում՝ երիզված բարձր ու սլացիկ բարդիներով, իսկ դիմացը՝ Արարատն է իր հանգիստ վեհությամբ: Դարեր են անցել, անցել են բազմաթիվ ու բազմապիսի նվաճողներ, պատերազմների ծուխն է խառնվել բարդիների խ[illegible] սոսափյունը: Մաքառել ու տանջվել է հողի մշակը մի կտոր հաց վաստակելու համար, երգել է տխուր ու վշտալի: Եվ մի օր էլ, երբ լցվել է համբերության բաժակը, զենք է վերցրել ու ելել իր ազատությունը նվաճելու:

Այդ օրից անցել է քառասուն տարի: Փոխվել է Արարատյան դաշտը, փոխվել է Հայաստանը: Հիմա ուրիշ երգ է լսում Արարատ սարը, աշխատավոր մարդու վստահ ու կենսախինդ երգը:

Մայիս է, արևոտ մայիս: Ժողովուրդը տոնում է իր վերածննդի 40-ամյակը: Եվ այսօր, երբ մենք ցուցադրում ենք մեր նվաճումները՝ հարյուրավոր գործարանների ու ֆաբրիկաների արտադրանքը, համայնական դաշտերի ու այգիների բարիքները, գիտության ու կուլտուրայի հաղթանակները, Արարատը ժպտում է կարծես ու հպարտ է, որ ժողովուրդն է այդ բոլորի տերը:

... Հայաստանի ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդես:

Եկ, պատանի ընթերցող, քեզ հետ միասին գնանք այնտեղ, անցնենք տուֆակերտ սյուների արանքով, քայլենք լայն ու գեղեցիկ ծառուղիով ու դիտենք 25 հեկտար տարածության վրա

# ՃԱՅԵՎՆ





փռված ցուցահանդեսը:

Այստեղ ամեն ինչ նոր է, նոր են ծառերը, որոնց մատղաշ տերևների մեջմ սոսափյունը միախառնվում է շատրվաններից ցայտող ջրի ուրախ աղմուկին: Ահա և գլխավոր հրապարակը: Այստեղ տեղավորված են ցուցահանդեսի հիմնական տաղավարները: Այս ի՜նչ տարօրինակ շինություն է՝ պատեր չկան, ամբողջ շենքը հեռվից նման է գետնի վրա փռված մի հսկա պարաշյուտի, որ կարծես իջել է, բայց դեռ չի փակվել: Դու երևի այդպիսի շենք չես տեսել. չէ որ դա կառուցված է շինարարական նոր տեխնիկայով, երկաթից, բետոնից և ապակուց:

Արդյունաբերության տաղավարն է դա:

Գմբեթաձև մի մեծ սրահ, լուսավոր ու բարիքով լի: Հայաստանի արդյունաբերության թողարկած ինչպիսի՜ ապրանք ասես, որ չկա այստեղ: Ահա մեր ռեսպուբլիկայի պարծանքը՝ էլեկտրատեխնիկական արդյունաբերության գործարանների թողարկած մեծ ու փոքր տրանսֆորմատորներն ու գեներատորները, էլեկտրաշարժիչները, հիդրոտուրբինները, ամենաբազմազան ու բարդ չափիչ գործիքներն ու սարքերը, որոնք ծնունդ առնելով Հայաստանում՝ գնում են աշխարհի տարբեր երկրներ, իրենց վրա կրելով «Պատրաստված է Հայաստանում» դրոշմը: Հապա քիմիական արդյունաբերությու՜նը: Քառասուն տարի առաջ հայ աշխատավորը կարո՞ղ էր երազել, որ իր հայրենիքը դառնալու է Սովետական Մեծ Միության քիմիական արդյունաբերության խոշոր կենտրոններից մեկը, կարո՞ղ էր նա ենթադրել, որ այսօր, այս հոյակերտ սրահում կցուցադրվեն իր երկրի հումքով պատրաստված սինթետիկ կաուչուկն ու կաուստիկ սոդան, կարբիդն ու պղնձարջասպը, պլաստմասսան ու արհեստական ադամանդը, ազոտային ու ֆոսֆորային պարարտանյութերը, ավտոդողերն ու բազմագույն ներկերը: Կանցնի ևս մի քանի տարի, և այս քիմիական ապրանքների կողքին կավելանան քարից ստացված մետաքսը, վիտամինները, նոր դեղանյութերը:

Քառասուն տարի առաջ Հայաս-



տանն ուներ խղճուկ արդյունաբերություն. Ալավերդում և Ղափանում աննշան քանակով պղինձ էր արդյունահանվում, կային կոնյակի—գինու մի քանի փոքրիկ գործարաններ, կաշվի ու մետաղամշակման մանր արհեստանոցներ: Իսկ հիմա նայիր այս պղնձի ու ալյումինի ձուլածո կտորներին, էլեկտրալարերին ու բազմազան մետաղահատ հաստոցներին, ժամացույցներին, հեծանիվներին, շինարարական բազմերանգ քարերին, մյուս արտադրանքներին, որոնք այսօր ստեղծվում են մեր ռեսպուբլիկայի աշխատավորների հերոսական ջանքերով: Այսպիսին է ներկայիս Հայաստանի արդյունաբերությունը: Բայց սա դեռ բոլորը չէ:

Ահա, սրահի մյուս անկյունում կարծես գարուն է բացվել. ծանրորեն փռված շքեղ գորգեր, ծաղկանկար ու բազմերանգ գործվածքներ՝ բամբակե, բրդե, մետաքսե ու արհեստական: Իսկ կոշիկները՝ տասնյակ, հարյուրավոր ձևի ու չափի, տարվա բոլոր եղանակների համար: Իսկ այս հիանալի կահույքը՝ պահարաններն ու սեղանները, իսկ այս համեղ պահածոները, մուրաբաները, պանիրն ու կարագը, կոնֆետն ու շաքարը, գինիներն ու հանքային ջրերը:

Նայում ես, նայում և սիրտդ ջերմությունից ու հպարտությունից ուռչում է: Այս ամբողջը մերն է, մենք ենք ստեղծել և դեռ էլի կստեղծենք: Բայց, պատանի բարեկամ, մենք դեռ դիտելու շատ բաներ ունենք: Եկ մի քիչ հանգստանանք այս մեծ ջրավազանի կողքին ու գնանք դիմացի սյունազարդ շենքը:

Գյուղատնտեսության տաղավար...

Պատերին փակցված բազմաթիվ ցուցանիշները, աղյուսակներն ու լուսանկարները պատմում են ռեսպուբլիկայի գյուղատնտեսության առաջավորների ձեռք բերած հաջողությունների մասին, պատմում են նաև, թե ինչպիսին կլինի Հայաստանի գյուղատնտեսությունը յոթնամյակի վերջում, 1965 թվականին: Պարկերի, զամբյուղների, արկղների, ապակե անոթների մեջ ցուցադրված են Հայաստանում աճեցված ճերմակ բամբակն ու ոսկի ցորենը, անուշահամ մրգերն ու անասնապահական մթերքները:

Գարուն է հիմա, դաշտ ու այգում մշակվում է այս տարվա հարուստ բերքը: Իսկ աշնանը, երբ այդ բերքը հավաքված կլինի, այս տաղավարում դու կտեսնես, թե ինչպիսի բարիքներ է տալիս մեր հողը: Այժմ բավարարվենք միայն նրանով, ինչը հնարավոր է եղել ձմռանը պահպանել և ցուցադրել այժմ:

Ահա և երրորդ տաղավարը:

Այս շենքը նույնպես արտասովոր տեսք ունի: Դիմացի պատերը ամբողջովին ապակուց ու մետաղյա բարակ ձողերից են պատրաստված: Ներսը լույս է և հարմարավետ: Այստեղ ցուցադրվում են հայ ժողովրդի կուլտուրայի ու գիտության նվաճումները: Տաղավարն սկսվում է մի ընդարձակ սրահով, որտեղ իրար կողքի շարված են սովետական տասնհինգ ռեսպուբլիկաների դրոշները: Այսօր այստեղ են հավաքվել մեծ ընտանիքի հարազատ եղբայրները և հպարտանում են իրենցից մեկի՝ հայկական ռեսպուբլիկայի նվաճումներով:

Ահա հաջորդ սրահը: Պատերից մեզ են նայում քառասուն տարի առաջ ժողովրդին պայքարի առաջնորդած հերոսները, որոնք իրենց կյանքը չխնայեցին հա-



Լուսանկարները՝ Մ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ և Գ. ՇԱՔԱՐՅԱՆԻ

նուն այսօրվա պայծառ իրականության: Եվ հիմա, մեր ցնծության պահին նրանք դարձյալ մեզ հետ են, շրջում են ցուցահանդեսում, հպարտանում և ուրախանում:

Եվ ինչպե՞ս կարելի է չուրախանալ, երբ դիտում ես ժողովրդական կրթությանը նվիրված սրահները: Անգրագիտության երկիրը այժմ դարձել է մտքի ու լույսի երկիր: Ահա և երեխաների գործերը՝ զանազան դազգահներ, գործիքներ, քանդակներ ու նկարներ, որոնք ցուցահանդես են բերվել ռեսպուբլիկայի տարբեր վայրերից:

Սրահները հաջորդում են իրար՝ «Առողջապահություն», «Սպորտ», «Ժողովրդական ստեղծագործություն», «Թատրոն», «Գիտություն» և այլն, և այլն: Ամեն ինչ հետաքրքիր է, բայց այնքան շատ են էքսպոնատները, որ նրանց մասին դժվար է պատմել:

Իսկ վերջին սրահում Երևանն է, մեր մայրաքաղաքը: Ուզու՞մ ես իմանալ, թե ինչպիսին կլինի նա մի քանի տարի հետո, կանգ առ և դիտիր 1980 թվականի Երևանի քարտեզը, շենքերի նախագծերն ու մակետները:

Հոգնել ենք, այնպես չէ՞: Դե, ուրեմն, դուրս գանք հրապարակ, գուցե պաղպաղա՞կ վերցնենք՝ զովանանք քիչ:

Իսկ հետո՞: Հետո կայցելենք ջերմոցները, որոնք, ճիշտ է, դեռ չեն ավարտված, բայց հետաքրքիր է տեսնել, թե ինչպե՞ս են կառուցվում: Այդ երկու մեծ ջերմոցներում կաճեցվեն ծաղիկներ ու կիտրոնի ծառեր: Այնուհետև կգնանք այգիները, որոնք նույնպես նոր են, դեռ առաջին անգամ են կանաչել, բայց մի քանի տարի հետո, երբ դու արդեն մեծ կլինես, այդ այգիներից էլ կհավաքեն Արարատյան դաշտի արևահամ մրգերը՝ խաղողն ու դեղձը, ծիրանն ու սալորը:

Ահա և վերջացրինք մեր էքսկուրսիան: Միայն թե ես պատմեցի այն, ինչ տեսել եմ, իսկ դու կարդացիր: Բայց ահա շուտով ամառային արձակուրդները վրա կհասնեն: Եթե ուզում ես իմ պատմածը տեսնել, հավաքիր ընկերներիդ ու միասին գնացեք այնտեղ՝ ցուցահանդես: Իսկ դրա համար պետք է Երևանի Աբովյան փողոցում նստել № 6 ավտոբուսը և իջնել վերջին կանգառում, այնտեղ, ուր ճիարշավարանն է:

ՎԱՀԵ ԵՐԿԱՆՅԱՆ

## ԱՆՈՒՇ ՀԱՅԱՍՏԱՆ

Allegro moderato

Խոսք և երաժշտ. Զ. ԱՎԱԳՅԱՆԻ

*Բազմադարյան քո վանքերի զարդերն եմ երգում,*
*Երկնասլաց նոր շենքերիդ վարդերն եմ երգում,*
*Մեր աշխարհի վեհ քաջերի գործերը վսեմ,*
*Աշխարհաշեն ապագայիդ ուղին եմ երգում:* — կրկնել

*Իմ հող, իմ ջուր, կարմիր արև,*
*Իմ կյանք, իմ սեր, կանաչ տերև,*
*Զեփյուռ ու հով, հույզերի ծով,*
*Անուշ Հայաստան:* — 2 անգամ

# 1961 թ.

Արտասովոր լուրը կայծակնային արագությամբ տարածվեց ամենուրեք և ցնցեց ամբողջ աշխարհը։ Կատարվեց մարդկության վաղեմի երազանքը. մարդը թռավ Տիեզերք, բացվեց մոլորակներ տանող ուղին։

Այդ օրը 108 րոպե շարունակ մարդիկ շունչները պահած հետևում էին սովետական խիզախ օդաչու, առաջին տիեզերագնաց Յուրի Ալեքսեևիչ Գագարինի անօրինակ թռիչքին։ Անգլիացի գրող Ջեյմս Օլդրիջը հայտարարեց. «Մեր աչքի առջև կատարվում է պատմության մեծագույն երկրորդ հեղափոխությունը»։

Երկրից մինչև 302 կիլոմետր հեռավորությունից Յուրի Գագարինը անվերջ կապ էր պահպանում Երկրի հետ։ Տիեզերքից նա տեսավ Երկրի ցերեկային կողմը, հստակորեն երևացող մայր ցամաքների ափերը, կղզիները, խոշոր գետերը, մեծ ջրամբարները, տեղանքի ծալքավորումները։ Գագարինը առաջին մարդն է, որը բախտ ունեցավ տեսնել նաև Երկրի գնդաձևությունը, հորիզոնի շատ բազմազան ու գեղեցիկ պատկերը, անցումը Երկրի լուսավոր մակերևույթից դեպի միանգամայն սև Երկինքը, որտեղ երևում են աստղերը։

— Այդ անցումը շատ նուրբ է,— ասում է Գագարինը,— ասես երկրագունդը շրջապատող ժապավեն-գոտի լինի։ Դա բաց երկնագույն երանգ ունի։ Եվ ահա երկնագույնից դեպի սևը այդ ամբողջ անցումը տեղի է ունենում չափազանց համաչափ ու գեղեցիկ։ Նույնիսկ դժվար է արտահայտել խոսքերով։ Երբ դուրս եկա Երկրի ստվերից, ապա հորիզոնը այլ տեսք ընդունեց։ Հորիզոնում ձգվում էր վառ նարնջագույն մի շերտ, որը այնուհետև դարձյալ փոխարկվեց երկնագույնի և նորից՝ խիստ սևի։

Յու. Ա. Գագարինը առաջինն էր, որ զգաց անկշռայնությունը։

— Ամեն ինչ հեշտացավ,— շարունակում է նա։ Ոտքերդ, ձեռքերդ կշիռ չունեն, առարկաները լողում են խցիկում։ Ես ինքս էլ նստած չէի թիկնաթոռին, ինչպես դրանից առաջ էր, այլ կախված էի օդում։ Անկշռայնության վիճակում ես ուտում էի, խմում. գրի առնում իմ դիտարկումները։ Ձեռագիրը նույնն է, թեև ձեռքդ կշիռ չունի։ Միայն ծոցատետրդ պետք է բռնես, այլապես ձեռքիդ տակից մի կողմ կսահի։

Երբ Երկիրը շրջանավելուց հետո Տիեզերքի Կոլումբոսը բարեհաջող վայրէջք կատարեց, սովետական մարդիկ ցնծության մեջ էին։ Իսկ ապրիլի 14-ին Մոսկվան տոնական տեսք էր ընդունել։ Ժողովուրդը դիմավորում էր անվեհեր զավակին, որը մայրաքաղաք էր ժամանում վայրէջքի շրջանից։ Կարմիր հրապարակից մինչև Վնուկովոյի օդանավակայանը ձգվող 33 կիլոմետրանոց ճանապարհը դարձել էր ասես մեր մոլորակի գլխավոր մայրուղին։ Օդանավակայանի շենքի ճակատից նայում էին Վ. Ի. Լենինի, Ն. Ս. Խրուշչովի և Յու. Ա. Գագարինի դիմանկարները։



Տիեզերագնացին դիմավորելու համար եկել էին պարտիայի ու կառավարության ղեկավարները, աշխատավորության ներկայացուցիչները, հերոսի հարազատները, օտարերկրյա հյուրեր ու դիվանագետներ: Գագարինին դիմավորելու համար Սոչիի շրջանից հատուկ ինքնաթիռով այստեղ ժամանեցին Ն. Ս. Խրուշչովը և Ա. Ի. Միկոյանը։

Ահա և հուզիչ րոպեն։ Կապույտ Երկնքում երևում է «Իլ—18» ինքնաթիռը։ Հանդիսավոր շքերթով նրան ուղեկցում են յոթ կործանիչներ։

վորել է նաև լեգենդար օդաչու Վալերի Չկալովը։ Նույն ուսումնարանի սանը այժմ գործեց «բոլոր դարերի մեծագույն հրաշքը», ինչպես այդ թռիչքի մասին ասում է աշխարհի մամուլը։

«Իլ—18»-ը ցած է իջնում և կանգ առնում օդանավակայանի շենքի մոտ։ Սանդուղքով իջնում է հերոսը՝ Տիեզերքից վերադարձած Յուրի Գագարինը։ Ծափահարությունների և «ուռա» բացականչությունների մրրիկի տակ նա բարձրանում է տրիբունա և զեկույց տալիս Նիկիտա Խրուշչովին։ Զեկույցից հետո Խրուշչովը հանում է գլխարկը, հայրաբար գրկում նրան և երկար, երկար ժամանակ մնում է գրկախառնված։ Տիեզերքի Կոլումբոսին սրտագին ողջունում են Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության մյուս ղեկավարները, հարազատները և օտարերկրյա հյուրերն ու դիվանագետները։ Այնուհետև մեքենաների շարասյունը շարժվում է դեպի Կարմիր հրապարակ, որտեղ տեղի ունեցավ մեծ միտինգ։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահությունը բարձր գնահատելով Յու. Ա. Գագարինի սխրագործությունը նրան արժանացրեց մեծ պատվի՝ շնորհեց Սովետական Միության Հերոսի և ՍՍՌՄ Տիեզերագնաց Օդաչուի կոչումներ։

# ԱՊՐԻԼԻ 12

Դա մի այնպիսի մեծարանք է, որ տրվում է այս կամ այն պետության ամենանշանավոր, ամենաբարձրաստիճան ղեկավարին։ Սակայն մինչև վերջերս էլ Գագարինը ուսանող էր Օրենբուրգի ավիացիոն ուսումնարանում, որտեղ մի ժամանակ սո-

Յու. Ա. Գագարինի տիեզերական հաջող թռիչքը Սովետական գիտության մեծագույն հաղթանակն է։ Պատմությունը հավերժ կպահի նաև այն գիտնականների ու կոնստրուկտորների անունները, որոնք կառուցեցին «Վոստոկ» տիեզերանավը։

## ԱՇԽԱՐՀՈՒՄ ԱՌԱՋԻՆԸ ՏԻԵԶԵՐԱԿԱՆ ԹՌԻՉՔ ԿԱՏԱՐԱԾ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՏԻԵԶԵՐԱԳՆԱՑԻՆ

## ՄԱՅՈՐ ՅՈՒՐԻ ԱԼԵՔՍԵԵՎԻՉ ԳԱԳԱՐԻՆԻՆ

*Թանկագին Յուրի Ալեքսեևիչ։*

*Ինձ մեծ բերկրանք է պատճառում Ձեզ ջերմորեն շնորհավորել նշանակալից հերոսական սխրանքի՝ «Վոստոկ» արբանյականավով առաջին տիեզերական թռիչքի առթիվ։*

*Ամբողջ սովետական ժողովուրդը հիացած է Ձեր փառապանծ սխրագործությամբ, որը դարերով կհիշեն որպես մարդկությանը ծառայելու արիության, խիզախության և հերոսության օրինակ։*

*Ձեր կատարած թռիչքը նոր էջ է բացում Տիեզերքի նվաճման գործում մարդկության պատմության մեջ և սովետական մարդկանց սրտերը համակում է մեծ բերկրանքով և հպարտությամբ իրենց սոցիալիստական Հայրենիքի համար։*

*Ի սրտե Ձեզ շնորհավորում եմ տիեզերական ճանապարհորդությունից հարազատ երկիր երջանիկ վերադարձի առթիվ։*

*Գրկում եմ Ձեզ։*

*Մինչև շուտափույթ հանդիպում Մոսկվայում։*

*Ն. ԽՐՈՒՇՉՈՎ*

12 ապրիլի 1961 թվականի

# ԹԵ ԻՆՉ ՏԵՍԱ ՎԵՐԵՎՈՒՄ

*ՅՈՒ. Ա. ԳԱԳԱՐԻՆ*

**ՊԱՏՄՈՒՄ Է ՏԻԵԶԵՐՔԻՑ ՎԵՐԱԴԱՐՁԱԾ ՄԱՐԴԸ**

Ուզում եմ ձեզ մի փոքր պատմել տիեզերքում եղած ժամանակ կատարած դիտարկումներիս մասին։

Երկիրը այդ բարձրությունից՝ 175—300 կիլոմետրից շատ լավ է երևում։ Երկրի մակերևույթի տեսքը մոտավորապես այնպիսին է, ինչպիսին մենք կարող ենք նկատել մեծ բարձրության վրա ռեակտիվ ինքնաթիռներով թռչելիս։ Շատ լավ նկատվում են խոշոր լեռնազանգվածները, մեծ գետերը, մեծ անտառազանգվածները, առափնյա գիծը, կղզիները։ Շատ լավ երևում են երկրի մակերևույթը պատող ամպերը, այդ ամպերի ստվերները երկրի մակերեվույթի վրա։ Երկնքի գույնը կատարելապես սև է։ Աստղերը մի որոշ չափով ավելի պայծառ և ավելի հստակ են երևում այդ սև երկնքի ֆոնի վրա։ Երկիրն ունի շատ բնորոշ, շատ գեղեցիկ երկնագույն լուսապսակ։ Լուսապսակը շատ լավ երևում է, երբ դիտում ես հորիզոնը; երբ այն աստիճանաբար փոխվում է երկնագույնի, կապույտի, մանուշակագույնի և միանգամայն սև գույնի։ Շատ գեղեցիկ են այդ փոփոխությունները։

Ստվերից դուրս գալիս երևաց Արևը և նա լուսավորում էր երկրի մթնոլորտի միջով։ Այդտեղ էլ այդ լուսապսակը մի փոքր այլ գույն ստացավ։ Բուն մակերևույթի մոտ, երկրի մակերևույթի բուն հորիզոնի մոտ կարելի էր տեսնել վառ-նարնջի գույն, որը այնուհետև վերածվեց ծիածանի բոլոր երանգների, երկնքի բաց կապույտ, կապույտ, մանուշակագույն և սև գույնի։

Երկրի ստվերի մեջ մտնելը տեղի է ունենում շատ արագորեն։ Անմիջապես սկսվում է խավարը, և ոչինչ չի երևում։ Երկրի մակերևույթի վրա այդ ժամանակ ես ոչինչ չտեսա, ոչինչ չէր երևում, քանի որ, ըստ երևույթին, ես անցնում էի օվկիանոսի վրայով։ Եթե մեծ քաղաքներ լինեին, ապա, հավանաբար, կրակները կերևային։

Աստղերը շատ լավ են երևում։ Երկրի ստվերից դուրս գալը նույնպես տեղի է ունենում շատ արագ ու շեշտակի կերպով։

Տիեզերական թռիչքի գործոնների ազդեցությանը, քանի որ ես լիովին նախապատրաստված էի, շատ լավ դիմացա։ Այժմ ինձ հիանալի եմ զգում։

Ես շատ երախտապարտ եմ մեր սովետական կոնստրուկտորներին, ինժեներներին և տեխնիկներին, սովետական աշխատավոր ամբողջ ժողովրդին, որը ստեղծեց «Վոստոկ» այդ հոյակապ նավը, նրա հոյակապ սարքավորումները, հոյակապ հզոր տանող-հրթիռը, որը թույլ է տալիս այդպիսի վիթխարի նավեր ուղեծիր դուրս բերել։

Ես անչափ ուրախ եմ, որ իմ սիրելի Հայրենիքը մարդկության պատմության մեջ առաջինը թափանցեց տիեզերք...



Ն. Ս. Խրուշչովը Յու. Գագարինի հետ

## 1961 ԱՊՐԻԼԻ 12

**ՄՈՍԿՎԱՅԻ ԺԱՄԱՆԱԿՈՎ**

**ժամը 9-ն անց 7 րոպե**—Սովետական «Վոստոկ» տիեզերանավով 27-ամյա Յուրի Ալեքսեևիչ Գագարինը թռավ տիեզերք։

**ժամը 9-ն անց 52 րոպե**—Տիեզերագնացը գտնըվում էր Հարավային Ամերիկայի վերևում և այնտեղից հաղորդեց. «Թռիչքը նորմալ է անցնում։ Լավ եմ զգում ինձ»։

**ժամը 10-ն անց 15 րոպե**—Թռչելով Աֆրիկայի վրայով, Յու. Ա. Գագարինը հաղորդեց. «Անկշռայնության վիճակին լավ եմ դիմանում»։

**ժամը 10-ն անց 25 րոպե**—Միացվեց տիեզերանավի արգելակիչ շարժման սարքը, և նավը սկսեց ուղեծրից ցածրանալ։

**ժամը 10-ն անց 55 րոպե**—«Վոստոկ» տիեզերանավը հաջող վայրէջք կատարեց։

**Երկրի շուրջը ամբողջ թռիչքը կատարվեց 1 ժամ 48 րոպեում։ Երկրի շուրջը նավը պտույտ կատարեց 89.1 րոպեում։**

## ՍԼԱՑՈՒՄ

ՎԱՀԱԳՆ ԴԱՎԹՅԱՆ

*Մարդը միշտ կյանքում սիրել է թռչել,*
*Տեսնել հեռուներ, տեսնել նոր ափեր.*
*Անշուշտ դուք գիտեք Իքարոսին, Իկարին,*
*Բայց հիմա ունենք Յուրի Գագարին,*
*Որ հողագունդը ծայրեծայր չափեց։*
*Դուք շատ եք լսել չքնաղ հեքիաթներ,*
*Որ մարդը հանկարծ նստել մի գորգի,*
*Թռել է հեռո՜ւ-հեռո՜ւ աշխարհներ,*
*Անհայտ աշխարհներն այս տիեզերքի։*
*Հեքիաթ է եղել, բայց սա հեքիաթ չէ,*
*Հեքիաթը արդեն կյանք է իրական,*
*Մարդը կարող է տիեզերք թռչել*
*Եվ իջնել հողին իր հայրենական։*
*Մարդը կարող է հասնել աստղերին*
*Եվ աստղեր բերել երկինքներից վար.*
*Մարդը նվաճեց ոլորտը վերին,*
*Ցրեց հավիտյան մշուշն այն խավար,*
*Որ պարուրում էր մեր լույս աշխարհին։*
*Անգին մանուկներ, ես դիտում եմ ձեզ,*
*Նայում ձեր պայծա՜ռ, պայծա՜ռ աչքերին,*
*Եվ ձեր աչքերից ժպտում են այնպես,*
*Հազար ու հազար Յուրի Գագարին։*





ՄԱՐՈ ՄՈՒՐԱԴՅԱՆ (ԱԼԱՋԱՆ

# ՍԿԻԶԲԸ

(Հիշողություններ)

1920 թվականի գարնանամուտն էր: Արևն իր ոսկեգույն ճառագայթներով ողողել էր Երևանի երկրորդ որբանոցի միջանցքը: Հնչեց նախաճաշի ուրախալի զանգը: Մենք՝ որբերս, շարք կանգնեցինք և դաստիարակչուհու առաջնորդությամբ մտանք ճաշասենյակը:

Քիչ հետո դուռը բացվեց, ներս մտան որբանոցի կառավարչուհի Արփենիկ Տոնոյանը և մի աղջիկ, որն անմիջապես գրավեց մեր ուշադրությունը: Նա հագել էր սև, ծալքավոր յուբկա, նույն գույնի վերնաշապիկ, պարանոցին կապել էր սև փողկապ, սպիտակ, լայնեզր գլխարկին փակցրած էր կարմիր, կապույտ և դեղին գույներով մի փոքրիկ դրոշակ:

Նախաճաշից հետո անծանոթ աղջիկը բոլոր որբերին շարք կանգնեցրեց և սկսեց ուշադիր զննել: Տասը հոգու ընտրելուց հետո նա հայտարարեց.

— Վաղն առավոտյան, ուղիղ ժամը 6-ին ես ձեզ կսպասեմ Անգլիական այգում (այժմ 26 կոմիսարների անվան այգի):

Առավոտյան սովորականից շատ շուտ զարթնեցի, շտապ հագնվեցի և անհամբեր սկսեցի սպասել ընկերուհիներիս: Վերջապես հավաքվեցինք և ուղիղ ժամը 6-ին «Անգլիական այգում» ներկայացանք անծանոթուհուն: Նա մեզ շարք կանգնեցրեց, սովորեցրեց շարքի կանոնները, ապա մի քանի մարմնամարզական վարժություններ, որոնք մենք շատ հաջող կատարեցինք:

— Ապրեք, շատ ապրեք: Հիմա դուք ինձանից նվերներ կստանաք,— ասաց օրիորդ Արծվիկը, որն իրեն սկաուտապետ էր անվանում: Եվ մեզանից յուրաքանչյուրիս տվեց մեկական թղթե կապոց:

Այգուց դուրս եկանք թե չէ, հենց Աստաֆյան փողոցում (այժմ Աբովյան փողոց) ես և Վերժինե Սինանյանը բացեցինք մեր կապոցները:

Ո՜վ զարմանք, այնտեղ տեսանք օրիորդ Արծվիկի հագած շորերից:

* * *

Անցան ամիսներ, 1920 թվականի նոյեմբերի 29-ին դաշնակցական կառավարությունը տապալվեց, և Հայաստանում հաստատվեց սովետական իշխանություն: Դեկտեմբերի 2-ին, Կարմիր Բանակի զորքերը Քանաքեռի բարձունքից մտան Երևան:

Որբանոցի կառավարչուհի Արփենիկ Տոնոյանի և ընդհատակյա կոմունիստ Հրանտ Ղարիբյանի տրամադրությունը արտակարգ բարձր էր: Նրանք բոլոր որբերիս շարք կանգնեցրին, տվեցին մեկական կարմիր դրոշակ և մեզ առաջնորդեցին դեպի Քանաքեռի խճուղին՝ ողջունելու Կարմիր Բանակի մուտքը:

Մենք գնում էինք՝ ներկա հասկացողությամբ ծիծաղելի տեսքով. հագնված սկաուտական համազգեստ, գլխներիս դաշնակցության եռագույնը, իսկ ձեռքներիս սովետական կարմիր դրոշակ:

* * *

1921 թվականի ապրիլ ամիսն էր: Մենք շարունակում էինք մեր մարմնամարզական պարապմունքները: Մի օր էլ «Անգլիական այգում» հայտնըվեց մի այլ երիտասարդ՝ Սպարտակի տեսքով ու կեցվածքով: Նա միջահասակ էր, գեղեցկադեմ և գանգրահեր: Համազգեստը տարբեր էր. գույները ուրախ էին և հաճելի: Ինձ հատկապես գրավել էր նրա ալ կարմիր և վառվռուն վզկապը: Երիտասարդը հագնում էր կանաչավուն վերնաշապիկ և մինչև ծնկները հասնող կարճ ու կապույտ շալվար: Մեջքը սեղմում էր մի լայն կաշվե գոտի, որից կախված էին իր անբաժան սուլիչը և մի մեծ ժամացույց:



Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

Այդ երիտասարդը ամեն օր, ժամը վեցին գալիս էր նույն ծառի տակ և սպասում իր «կադրերին»: Նրա շուրջն էլ հավաքվում էին աղջիկներ ու տղաներ: Մի շարք մարմնամարզական վարժություններից հետո, նրանք շրջանաձև նստում էին ծառի տակ, իսկ գանգրահեր երիտասարդը, շրջանի մեջտեղը կանգնած, պատմում էր ուշագրավ պատմություններ, հետաքրքիր խաղեր կազմակերպում: Նրանք երգում էին, արտասանում: Շատ աշխույժ և բովանդակալից էին անցնում նրանց պարապմունքները: Իսկ մեզ մոտ տխուր էր, լարված: Մի շարք մարմնամարզական վարժություններ կատարելուց հետո, մենք ցրվում էինք:

Մի առավոտ ես Արծվիկի մոտ չգնացի. հետաքրքրությունն ինձ մղեց դեպի կարմիր վզկապավոր երիտասարդը: Ու այդպես ես դուրս եկա սկաուտական կազմակերպությունից և մտա պատկոմական շարքերը:

Անցան ամիսներ: Գանգրահեր երիտասարդը մեր շատ սիրելի Ստյոպա Մանուկյանն էր, Հայաստանի պատկոմական կազմակերպության սիրտն ու հոգին: Նա արդեն ուներ իր «մշտական» բանակը, 300—500 անդամներով:

Առաջին պատկոմներից էին Պարույր Հարությունյանը, Երվանդ Խալեյանը, Հրայր Իսաբեկյանը, Վերժինե Սինանյանը, Վեհանուշ Սալախյանը, Հռիփսիկ Սարգսյանը, Սիրիկ Այվազյանը, Եպրաքսյա Բաբլոյանը, Սիրվարդ Խաչատրյանը: Քաղ.—դաստիարակչական աշխատանքները կատարում էր Արտո Բզնունին, որին ուղարկել էր Կոմերիտմիության Կենտրոնական Կոմիտեն:

Սկաուտները մեզ սկսեցին ամեն քայլափոխին հալածել, հաճախ էլ հարձակվում էին մեզ վրա և ծեծում: Մենք ևս, մեր հերթին, գիտակցական պայքարի դուրս եկանք սկաուտների դեմ: Այդ պայքարի ընթացքում, սկաուտներից շատ-շատերը զգացին իրենց սխալը և անցան մեր շարքերը: Այսպիսով, պատկոմական կազմակերպությունը գնալով խտանում էր, իսկ սկաուտականը՝ նոսրանում: Պատկոմների թիվը արդեն անցնում էր հազարից:

1921 թվականի հուլիս ամիսն էր: Այգում մարմնամարզական վարժություններից հետո Ստյոպա Մանուկյանի կարգադրությամբ, շրջանաձև



# ՄԱՅԻՍՅԱՆ ԵՐԳ

ԵՐՋԱՆԻԿ ԱՌԱՔԵԼՅԱՆ

Թող ծաղկով լինի,
Թող երգով լինի
Մայիսը այս նոր.
Ուրախ կարկաչով,
Զվարթ քրքիջով
Լցվեն դաշտ ու ձոր:

Հորդ անձրև թող գա,
Օրերն արևկա
Լինեն այս գարնան.
Որ գալիք աշնան,
Բերքով անսահման
Լցվեն տուն, մառան:

Թող լինի խաղաղ
Մեր կյանքը չքնաղ,
Խնդությամբ վարար.
Հնչի ծիծաղը,
Սրտաբուխ տաղը
Աշխարհում արար:

Աշխարհը համայն
Լինի մի սեղան,
Առատության ծով,
Որ մանուկները
Երգեն ու խաղան
Ծափ ու ծիծաղով:



նստեցինք գետնին: Մեզ հետ զրուցելու էր եկել Լուսժողկոմի տեղակալ Տիգրան Մուշեղյանը:

— Այսօր Պատկոմական կազմակերպության պաշտոնական հիմնադրման օրն է,— ասաց Տիգրան Մուշեղյանը,— ամեն տարի այս օրը ձեզ համար տոն է լինելու: Պատկոմական կազմակերպության հիմնադրման՝ ձեր տոնի առթիվ դուք կստանաք դահլիճ, նվագախումբ և զգեստ:

Փոթորկեցին ծափերն ու ուռաները:

Լսվեց ընկեր Ստյոպայի հրամայական ձայնը: Մենք ոտքի կանգնեցինք:

— Պատկոմներ, պատրա՛ստ:

— Միշտ պատրա՛ստ ենք,— պատասխանեցինք մենք:

Կարճ ժամանակից հետո մենք ունեցանք թե ակումբ և թե նվագախումբ: Վերջինս ավելի բարձրացրեց մեր տրամադրությունը և մեծ շուք ու հանդիսավորություն տվեց շքերթին:

Նվագախումբը ղեկավարում էր Նիկոլայ Թեյմուրազյանը: Տասնհինգ օրում նա մեզ երկու քայլերգ սովորեցրեց:

Լուսժողկոմը մեզ տրամադրեց նաև երեք սենյականոց մի շենք: Առաջին սենյակում տեղի էին ունենում մեր ընդհանուր ժողովներն ու քաղցրագիտական պարապմունքները: Երկրորդ սենյակը պատկոմական կազմակերպության ղեկավար Ստ. Մանուկյանի ընդունարանն էր: Երրորդը՝ պահեստասենյակն էր, որտեղ դնում էինք մեր փայտիկները, նվագախմբի գործիքներն ու թմբուկը:

Այդ նույն շենքում էր գտնվում նաև Պատկոմական շտաբը, որի պետն էր Արտո Բզնունին: 1921 թվականի հուլիսի վերջերին բացվեց հրահանգչական դպրոց, որտեղ սովորում էին 50 հոգի: Նրանցից 23-ը ավարտեցին դպրոցը, ստացան հրահանգչի կոչում և Երևանի դպրոցներում ու մանկատներում ստեղծեցին պատկոմական կազմակերպություններ: Հետագայում բացվեց նաև կոլվարական դպրոց, որտեղ աշխատողները հրահանգիչների օգնությամբ պատկոմական կազմակերպություններ ստեղծեցին Լենինական քաղաքում, Կիրովականում, Դիլիջանում և Հայաստանի մնացած շրջաններում:



# ՆՈՐԻՑ ՄԱՅԻՍ Է

ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ

Նորից ծաղկավառ մայիսն է եկել,
Հնչում են զվարթ երգեր տոնական.
Քաղաքն է շքեղ զարդերով զուգվել,
Անցնում են անծիր շարքեր հաղթական:

Վաղ առավոտյան պատշգամբ թռչում,
Հրճվում է անզուսպ Արայիկն այնպե՜ս.
Մեկ ծափ է տալիս, մեկ ուռա կանչում,
Ի՜նքն է ընդունում շքերթը կարծես:

Արևն է ուրախ ժպտում երկնքից,
Ծով խնդություն է եզերքից եզերք.
Գոչում է տղան իր սրտի խորքից.
— Ջա՜ն, Մայիսի մեկ, ջա՜ն, մայիսի մեկ...

Ահա շարքերը պիոներական,
Քայլում են նրանք առույգ ու կայտառ.
Ու փողփողում են դրոշներն ալվան,
Օրորվում ինչպես քայլող մի անտառ:

Արայիկն էլ իր դրոշն է պարզում,
Փոքրիկ դրոշը փոքրիկ ձեռքերով:
Նայում է տղան, նայում երազուն.
Ինչ լա՜վ է քայլել այդպես շարքերով:

Թվում է մի պահ ինքը մեծացել,
Հերոս է դարձել անվանի ու քաջ.
Դրոշը մինչև երկինք բարձրացրել,
Քայլում է հպարտ բոլորից առաջ...

# ՄԵՐ ՓՈՔՐԻԿ ՈՒՂԵԿԻՑԸ

ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ

Նկ. ԼԻԴԱ ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

*Մայիսի մի պարզ ու պայծառ օր, երբ գարնան մռայլ մառախուղներից հետո Սևանի ջրերը առկայծում էին ու ծիծաղում, մենք ջուրը մտանք մեր ռետինե նավակներով ու ցած գցեցինք մեր կարթերը: Մեր դիմաց միջնադարյան Այրիվանքն էր թառել ծովափնյա ժայռին՝ իր մամռոտ գմբեթներով, մի այլ ժայռի գագաթին բարձրանում էր հինավուրց բերդի աշտարակը: Գյուղից հեռու, այդ աշտարակի ստորոտում, ժայռերի ու հրաբխային քարակույտերի մեջ ճերմակին էր տալիս մի տնակ: Նրանից մի մարդ դուրս եկավ ու ձայն տվեց մեզ.*

*— Էդտեղ ձուկ չկա, ափ եկեք, ձեզ լավ ձկան տեղ ցույց տամ...*

*Թիավարեցինք դեպի ափ: Հիսունն անց, քամհարված դեմքով մի ձկնորս շատ սիրալիր ընդունեց մեզ:*

*— Գնանք հաց կերեք, հետո ձկան տեղը ցույց կտամ,— առաջարկեց նա:*

*Հրաժարվեցինք:*

*— Եթե ուզում եք մեզ հյուրասիրել, հենց հիմա ցույց տուր մի տեղ, ուր ձուկն առատ լինի,— ասաց իմ ընկեր Լորիսը՝ կարթը հավաքելով:*

*— Ցույց կտամ, բայց ծովին ծանոթ մարդ է պետք ձեզ հետ,— ասաց ձկնորսը:— Քանի որ մեր Սևանը գիժ բնություն ունի, կարող է խամ մարդկանց վնասել:*

*Որ Սևանն իրոք «գիժ» է, ես դա իմ փորձով վաղուց գիտեմ, ուստի համաձայնեցինք մարդու առաջարկին:*

*Մեր խոսակցության ընթացքում թշիկները բրոնզագույն, և աչքերը ծիծաղկոտ մի սիրուն պատանի մոտեցել էր մեզ և հետաքրքրությամբ զննում էր մեր նավակները:*

*— Ալբերտ, սրանց կտանես Գըլլջները,— պատվիրեց մարդը պատանուն և օգնեց մեզ նավակ նստելու:*

*Մեր փոքրիկ առաջնորդը շատ ամաչկոտ և քըչախոս դուրս եկավ: Նա ծնվել ու մեծացել էր այս մենավոր տանը և, ըստ երևույթին, քաղաքից եկած մարդու հազվադեպ էր հանդիպել:*

*Մեր նավակները թեթև սահում էին լճի անկրկնելի մակերեսին, իսկ զմրուխտ հագած լեռներից եկող մեղմ հովը շոյում էր մեր դեմքերը:*

*Հարց ու փորձ արինք և, մինչև տեղ հասնելը, այդ քչախոս պատանուց հազիվ կարողացանք այսքան իմանալ, որ սովորում է հարևան Այրիվանք գյուղի դպրոցի չորրորդ դասարանում և, որ իր հայրը կոլտնտեսության որմնադիր Արամ Դադիկյանն է:*



Ափից շատ չէինք հեռացել, երբ նկատեցինք, որ լճի մակերեսը պատած է պղպջակներով։

— Ծովի տակից աղբյուրներ են դուրս գալիս,— պատասխանեց մեր հարցին Ալբերտը քաշվելով և ավելացրեց,— արդեն հասել ենք ձկի տեղը։

Եվ մենք, որ դարձել էինք խիստ անհամբեր, իսկույն պատրաստեցինք մեր կարթերը. արդյոք ինչե՞ր պիտի հանենք փորձված ձկնորսի ցույց տված այս խորքերից...

Բայց ամբողջ մի ժամ անցավ՝ կարթերին ձուկ չի մոտենում։ Մինչդեռ շրջապատում՝ մեկ այստեղ, մեկ այնտեղ ջրից վեր են թռչում հատուկ կողակները և արծաթակող իշխանները, չըմփոցով նորից ցած են ընկնում և խռովում մեր հոգիները։

— Ի՞նչ է պատահել, Ալբերտ,— խոսեցնում եմ նրան։

— Եղանակը լավ չի,— ցածր ձայնով պատասխանեց նա։

Լորիսը զարմացավ։

— Բա՞ս սրանից էլ լավ եղանա՞կ. արև, խաղաղ...

— Խաղաղը լավ չի,— առարկեց Ալբերտը մի փոքր համարձակություն առնելով։— Խաղաղ ժամանակ ձկները ջրի երեսն են բարձրանում, խաղում կամ՝ մոծակ բռնում...

Հիանալի բացատրություն. մեր կարթերը լճի հատակին են՝ տասնհինգ մետր խորության վրա, ուր իշխան ձկան «ավլաղներն» են՝ նրանց արոտները։ Բայց հիմա նրանք վեր են բարձրացել մակերեսին արևի տակ զվարճանալու։

Աժդահակի ձյունոտ բարձունքից փչեց հովը, լճի հարթ մակերեսը կնճռոտվեց։ Քամին քշեց տարավ ջրի վրա կուտակված մոծակների շնչքերը, արևն էլ մտավ ամպի տակ։ Հիմա ձկները կիջնեն հատակը՝ իրենց «ավլաղները», ուր մեր կարթերն են։

Եկավ... եկավ առաջին ձուկը՝ թպրտալով, դիմադրելով, պարանով բռնված վայրենի քուռակի նման թափահարելով ու դես-դեն նետվելով...

Նայում էր փոքրիկ ուղեկիցը մեր խանդավառված դեմքերին, լսում մեր բերկրանքի ճիչերը և ներողամտաբար ժպտում։ Նրա հայացքի մեջ կարելի էր կարդալ. «Ի՞նչ մեծ բան է, որ այդքան ուրախանում եք»։

Իրավունք ուներ մեզ հեգնելու այդ փոքրիկ ձկնորսը։ Հաջորդ օրը մեզ պատմեցին, որ երեք տարի առաջ ձմեռը նա ծակել է սառույցը, կարթը կախել ու այնպիսի մի ձուկ է բռնել, որ ուժը չի պատել ջրից հանելու։ Գնացել է գյուղից մարդիկ կանչել, եկել են ջրից դուրս հանել վեց կիլոգրամ կշիռ ունեցող ահռելի «Ցաբանին»։ Ութ տարեկան հասակում այդպիսի ձուկ բռնողն, իհարկե, հիմա մեզ պիտի նայի արդեն փորձված ձկնորսի աչքերով։

Քամին դադարեց, նորից ձուկը չբացավ։

— Ալբերտ, լսել եմ, որ Նորադուզի կողմը շատ ձուկ կա, չքշե՞նք այն կողմը,— հարցրեց մեր երրորդ ընկերը՝ Բենիկը։

Տղան նայեց երկնքին և ոչինչ չպատասխանեց։

Առանց մեր առաջնորդի տատանումները հաշվի առնելու, իմ տաքարյուն ընկերները սկսեցին թիավարել դեպի լճի խորքը։



Տղան չդիմադրեց, բայց նրա սև աչքերի մեջ կարդում էի, որ ափից հեռանալը իր սրտովը չի:

— Լողալ գիտե՞ք,— հարցրեց ինձ ամաչելով:

— Ոչ: Հենց ցած ընկա՝ քարի նման գնալու եմ հատակը,— ծիծաղելով խոստովանեցի ես:

— Դա լավ չի,— կարմրելով դիտեց տղան և Աժդահակի բարձունքը հայացքով քննելուց հետո ավելացրեց.— Քիչ հետո բոքոլոզը կգա...

— Ո՞վ է բոքոլոզը,— հետաքրքրվեցի ես:

Տղան շփոթվեց:

— Հիմի կտեսնենք ով է բոքոլոզը,— քիչ հետո ասաց նա: Ապա մի փոքր լռելուց հետո ավելացրեց.— Ետ դառնանք, առաջ գնալը լավ չէ...

Ի՞նչն է անհանգստացնում տղային: «Երևի վախենում է երեխան»,— մտածեցի ես:

Մենք չգիտեինք, որ լճափին մեծացած այդ տղան ոչ միայն երկնքի նշաններից ու քամու ուղղությունից, այլև իր բնազդներով զգում է, թե ինչպես վտանգն անձայն, բայց արագությամբ մոտենում է մեզ...

Ես տեսնում էի, թե ինչպես նա հոտոտում է օդը, և դա երևում էր նրա դողդողացող ռունգերից:

— Ասացեք առաջ չգնան,— նորից պնդեց տղան:

Ես ընկերներիս, որ հարևան նավակում էին, պատմեցի տղայի ենթադրությունների և երկյուղի մասին: Եվ դա առիթ եղավ, որ կատակի ու ծաղրի նյութ դառնա Ալբերտի ասած բոքոլոզը: Սկսեցին ձեռ առնել տղային.

— Բոքոլոզը ե՞րբ է գալու, Ալբերտ:

— Բոքոլոզդ ոտով է գալու՞, թե նավով:

— Բոքոլոզը կոտոշներ ունի՞...

Տղան ամաչելուց այնպես էր շփոթվել, որ չգիտեր գլուխը որտեղ թաքցնի:

Բայց Սևանի բնությունն իր զավակին շատ շուտով հանեց անհարմար վիճակից. պտտահողմը ափի ավազներից արշավող սյուներ կազմեց, փոշու մառախուղ բարձրացավ և ամբողջ թափով եկավ մեզ վրա... Խաղաղ լիճը միանգամից ճերմակեց վշշացող փրփուրներից: Ահեղ հողմի ուժից քշված ալիքներն այնպես էին շտապում դեպի մեզ, որ իրար շալակ էին բարձրանում, նորից լեռնանում, նորից առաջ վազում: Եկան փրփրած բաշերով, հասան մեզ և մեր նավակները դես-դեն նետեցին թեթև տաշեղների նման:

Ա՛յ քեզ բոքոլոզ...

— Խարիսխները գցեցեք,— գոչեցի ես ընկերներիս:

Է՛, Բոքոլոզին խարի՞սխ կդիմանա. պոկեց տարավ և հաջորդ րոպեին ջրի փրփրած դեզերի մեջ մենք կորցրինք իրար:



— Քիթը ալիքի կողմը պահիր, որ նավակը ջուր չգա,— ամոթխածությունը մի կողմ դնելով Լորիսին խորհուրդ տվեց մեր պատանի առաջնորդը։— Տուր, թիակներն ինձ տուր,— խնդրում էր նա։

Բայց Լորիսը փորձված թիավարող էր և թիակները ոչ ոքի զիջելու մտադրություն չուներ։ Թիակների համաչափ հարվածներով նա թե՛ դիմագրավում էր կատաղի ալիքներին և նրանց խորխորատներից հաջող դուրս բերում նավակը և թե՛ նրա ընթացքը ուղղում էր դեպի հեռվում ճերմակին տվող հրվանդանը։

Առափնյա գյուղերից բազմություն էր հավաքվել աղետյալներիս դիտելու, բայց մրրիկը մեզ այնքան հեռու էր քշել, որ ափին խռնված մարդիկ մրջյունների չափ էին երևում։

Երկար տևեց պայքարը մեր և Ալբերտի ասած «բոբոլոզի» միջև։ Վերջապես թշշացող ու եռացող լայնատարած դաշտի մի անկյունում մի սև կետ երևաց, որ արագությամբ մեծանում էր։ Նորադուզից նավ էին ուղարկել մեզ փրկելու...

* * *

Խենթ է, խենթ մեր Սևանը։ Քիչ անց մենք ափի ավազներին մեկնված հանգստանում էինք, իսկ արևը, մայիսյան սքանչելի արևը զորովագութ մոր նման գուրգուրում էր մեզ՝ կարծես մեղմելու համար այն տանջանքները, որ կրեցինք կատաղած տարերքից։

Նորից այնպես մեղմ ու խաղաղ էր շրջապատը, կարծես փոթորիկն ու մրրիկը անծանոթ բաներ են այդ վայրի համար։

— Ջնատե՞նք նավակները,— անհամբեր հարցրեց Բենիկը։

— Նստենք,— համաձայնվեցի ես, բայց միայն Ալբերտի թույլտվությամբ... Նախ թող նայի երկնքի նշաններին ու որոշի, հո բոբոլոզը էլ չի՞ գալու...

Իմ այս մեծարանքից տղայի թուխ ճակատին քրտինքի կաթիլներ շարվեցին։

— Չէ, էսօր էլ բոբոլոզը չի գա,— ասաց նա՝ Աժդահակի չալ ընկած բարձունքներին նայելով։

Եվ մենք պատրաստեցինք մեր կարթերն ու նստեցինք նավակները։

Իսկապես, որ գիժ է մեր Սևանը։ Բայց մենք հո նրանից պակաս չե՞նք...



# ՏՈՒՐ



ԿԱՄԱՐԻ ՏՈՆՈՅԱՆ

Զբոսայգի գնալու ճանապարհին տղան շարքում բռնել էր մի աղջկա ձեռքից։ Նա ասաց աղջկան.

— Զբոսայգում ես ու դու միասին կխաղանք։

— Այո,— ասաց աղջիկը։

Այդ աղջիկը այնքան լավը չէր, որ տղան առանց որևէ պատճառի ցանկանար խաղալ միայն նրա հետ։ Շարքում կային շատ այլ աղջիկներ, որոնցից յուրաքանչյուրին տղան կարող էր համարել ավելի լավը, քան նրան։ Բայց որովհետև շարքում այդ բոլոր աղջիկներից տղան բռնել էր միայն նրա ձեռքը, համոզված էր, որ ինքը զբոսայգում պիտի խաղա հենց նրա հետ։ Ուրիշ որևէ մեկի ձեռքից բռն-

# ՁԵՌՔԴ

նած նա այդքան երկար ճանապարհ չէր անցել։

Զբոսայգում տղան ճարեց մի գնդակ, մոտեցավ աղջկան.

— Արի՛ խաղանք։

— Ես ուզում եմ ճոճանակ նստել,— ասաց աղջիկը։

Ճոճանակի մի կողմում նստած էր գանգրահեր, կլոր սև աչքերով մի տղա։ Մյուս կողմն ազատ էր։

— Արի միասին խաղանք,— ասաց տղան։

Աղջիկը ցանկացավ վազել դեպի ճոճանակը։ Տղան քաշեց նրա թևից.

— Արի՛։

— Թո՛ղ,— ճչաց աղջիկը և լացեց։

— Ի՞նչ ես անում։ Թող նրան,— սաստեց մոտեցած դաստիարակչուհին։

— Ես ուզում եմ նրա հետ խաղալ,— ասաց տղան։

— Ինչո՞ւ։

Տղան չէր կարող բացատրել, թե ինչու։ Որովհետև նա միայն նրա, այդ աղջկա ձեռքից բռնած էր անցել մանկապարտեզից մինչև զբոսայգին տանող երկար ճանապարհը, և հիմա նա ինչ-որափսոսում էր, ինչ-որ բան կորցրած էր զգում։

— Ես ճանապարհին նրա հետ էի քայլում,— ասաց տղան։

— Խաղա Սաթիկի հետ։ Սաթիկը լավ աղջիկ է։

Տղան զգաց, որ դաստիարակչուհին չհասկացավ իրեն։

Նա քաշվեց բոլորից մեկդի, մի նստարանի թիկնակի հետև։ Նստել էր բազալտե եզրաքարին, գնդակը դրել ծնկներին և տխուր էր։ Նա չէր ցանկանում, որ որևէ մեկը մոտենար իրեն, որևէ մեկը ընկերակցեր։ Նա կարող էր թողնել գնդակը, ճարել մի ճոճանակ և խաղալ նրա հետ։ Բայց նա չէր ցանկանում, որ աղջիկը իր հետ խաղար միայն ճոճանակի համար։ Նա զույգ ձեռքով ծնկների վրա պահում էր գնդակը և համոզում էր իրեն, որ գնդակը ավելի լավն է, քան ճոճանակը։

Վերադարձին երեխաները շարվեցին զույգ-զույգ, ինչպես միշտ, յուրաքանչյուր զույգում՝ մի տղա, մի աղջիկ։ Աղջիկը կանգնեց տղայի կողքին։ Տղան դուրս եկավ շարքից։







— Տո՛ւր ձեռքդ,— ասաց տղայի կողքից քայլող աղջիկը։

Տղան տվեց ձեռքը և հանկարծ ետ քաշեց.

— Ո՛չ։

Աղջիկը նայեց տխուր. «Չէի կարծում, թե ես այդքան վատ աղջիկ եմ», մոտավորապես այսպես հասկացավ տղան։

Տղան կտար իր ձեռքը նրան, տղան համաձայն էր, որ նա լավ աղջիկ է։

— Դու լավ աղջիկ ես,— ասաց տղան։

Աղջիկը շիկնեց, տղան հասկացավ, որ նա դադարեց տխուր լինելուց։ Ժպտաց, աղջիկը ցանկացավ ձեռքը պարզել նրան, բայց տղան դարձրեց դեմքը։ Նա չէր ցանկանում, որ հետո զգար ինչ-որ մի լավ բան կորցրած ևափսոսար դրա համար։

— Ինչո՞ւ դուրս եկար շարքից,—հարցրեց դաստիարակչուհին։

— Ես չե՛մ ուզում նրա հետ գնալ,— ասաց տղան։

— Սաթի՛կ, դու գնա նրա հետ,—ասաց դաստիարակչուհին և նրա կողքին կանգնեցրեց Սաթիկին։

Ճանապարհին երեխաները բռնել էին իրար ձեռք։

# ԱՆՏԵՍԱՆԵԼԻ ԼԻՆՈՏԻՊԻԿԻ ՖԵԼԻԵՏՈՆՆԵՐԸ



*ԱՐՏԱՇԵՍ ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ*

**ՖԵԼԻԵՏՈՆ ՀԻՆԳԵՐՈՐԴ**

## ԽԱՆՈՒԹՈՒՄ

*Աբովյան փողոցում մի գեղեցիկ խանութ կա։ Այնտեղ հրաշալի հագուստներ են վաճառում։ Ցուցափեղկերն էլ այնքան լավ են, որ ուղղակի չես ուզում հեռանալ։ Դե, ես էլ՝ անտեսանելի Լինոտիպիկս, ճիշտ է, հագուստի կարիք չեմ զգում, բայց և այնպես հաճելի է, երբ տեսնում եմ, որ մեր փոքրիկները գույնզգույն հագուստներ են գնում ու երջանիկ դեմքերով դուրս գալիս խանութից։*

*Ես նայում եմ նրանց և ուրախանում։*



Ահա ցուցափեղկին է մոտե- նում Գրետան՝ իր հայրիկի հետ: Նայում են հիացած։

ՀԱՅՐԸ—Գրետա, տեսնո՞ւմ ես այն հագուստը, լա՞վն է:

ԳՐԵՏԱ—Լավն է, պապ ջան:

ՀԱՅՐԸ— Դե տե՛ս, ինչպես խոստացել էի, հիմա գնելու եմ քեզ համար, տոնի առթիվ:

ԳՐԵՏԱ—Վայ, ինչքան լա՜վն է, շո՛ւտ մտնենք խանութ:

ՀԱՅՐԸ—Ընկերուհի, խնդրում եմ, այն հագուստը տվեք, ոչ, ոչ, մյուսը: Ահա, շնորհակալություն: Դե, փորձիր, Գրետա, ինչպե՞ս է...

ԳՐԵՏԱ—Շատ լավն է, պապ ջան, վա՜խ, ընկերուհիներս ոնց են նախանձելու:

ՀԱՅՐԸ—Գրետա, այդպես չի կարելի խոսել ընկերուհիների մասին: Խնդրեմ, ստացեք դրամը: Դե, գնանք, աղջիկս:

ԳՐԵՏԱ—Ու՞ր:

ՀԱՅՐԸ—Ինչպե՞ս թե ուր՝ տուն:

ԳՐԵՏԱ—Ուրեմն միայն էս ես առնո՞ւմ...

ՀԱՅՐԸ—Իսկ է՞լ ինչ ես ուզում:

ԳՐԵՏԱ—(Բարձրաձայն) Ա՛յ, էն մյուս շորն էլ եմ ուզում, որ վրան թիթեռնիկ կա: Հետո էն կարմիր գլխարկը, հետո...

ՀԱՅՐԸ—Անհարմար է, Գրետա: Նախ՝ այդպես բարձրաձայն չի կարելի խոսել: Տեսնո՞ւմ ես, բոլորը քեզ են նայում: Հետո այս մի հագուստը բավական է:

ԳՐԵՏԱ—Ի՞նչ անեմ, որ նայում են, իրենց ո՞վ է խնդրում,՝ որ նայեն: Ա՛յ, էն շորն էլ եմ ուզում, գոնե էն մատրոսկան:

ՀԱՅՐԸ—Բայց դու ունես դրանից:

ԳՐԵՏԱ—Ի՞նչ անենք, որ ունեմ, արդեն հին է. (լաց է լինում): Լավ է՛լի, առ ինձ համար:

ՀԱՅՐԸ—Գրետա, հասկացիր...

ԳՐԵՏԱ—Չե՛մ, չե՛մ, ուզում եմ, չես առնում չէ՞, չես առնում, չէ՞.

ԼԻՆՈՏԻՊԻԿ—Օ՜յ, ինչ ամո՜թ է: Եվ ինչպե՞ս Գրետան չի ամաչում: Բոլորը նրան են նայում: Նույնիսկ այն երկու փոքրիկները ծիծաղում են վրան: Դե, մի՞թե կարելի է այդպես պահել իրեն: Եթե կուզեք իմանալ, այդպիսի աղջիկն անգամ արժանի չէ նոր հագուստի: Նույնիսկ նրա հայրիկն անհարմար զգաց ու բարկացած դուրս եկավ խանութից: Նա տանը, իհարկե, ինչպես հարկն է, խստորեն կխոսի Գրետայի հետ: Բայց պետք է, որ դուք էլ, երեխաներ, անտարբեր չանցնեք նման արարքի կողքով: Տեսա՞ք, փոքրիկ դեպք է, բայց այդ փոքրիկ դեպքն անգամ ցույց տվեց, որ Գրետան ագահ է, չի հարգում իր ծնողներին և իրեն պահել չգիտե դրսում: Ահա թե ինչ:

## ՖԵԼԻԵՏՈՆ ՎԵՑԵՐՈՐԴ

## ՃԱՆԱՊԱՐՀ ՏՎԵՔ ՆՐԱՆ

— Տես է՛, անցնում էի Լենինի պողոտայով ու քիչ էր մնում մոռանայի, որ մի կարևոր այց ունեմ: Այսինքն հիմա, որ պատմեմ ձեզ, գուցե նույնիսկ չհավատաք: Դե, լավ, պատմեմ: Ուրեմն, տեղեկություն ստացա, որ Լենինի պողոտայի № 40 շենքում ապրում է մի աղջիկ՝ Նատա անունով: Այսինքն անունը Նատալիա է, բայց մտերիմները պարզապես՝ Նատա են կանչում: Բավական խելոք աղջիկ է. սիրում է երգել և լավ է երգում: Դուք լսե՞լ եք նրա արտասանությունը: Օ՜, եթե լսեք, անպայման մեծ հաճույք կստանաք: Իսկ եթե տեսնեք նկարները... ես ձեզ միանգամից կասեմ. շենքում, իր հասակակիցների մեջ, Նատայի նման նկարող չկա: Նա այնպիսի տուն կարող է նկարել,

ոնց որ իսկական... իսկ ծաղիկները... թվում է, թե բուրում են։

Ա՛յ թե ինչպիսի՜ աղջիկ է Նատան։

Բայց, չսխալվեք, կարծելով, թե Նատան օրինակելի աղջիկ է։ Նա մի այնպիսի թերություն ունի, որ եթե ասեմ՝ կծիծաղեք։ Պատկերացնո՞ւմ եք, այդքան շնորհքով աղջիկը... միայնակ չի կարողանում ուտել։ Այո, այո, ուտել։ Չե՞ք հավատում։ Ախր այդպես էլ գիտեի։ Դե եկեք միասին բարձրանանք նրանց բնակարանը։ Ա՛յ, լսո՞ւմ եք...

ՆԱՏԱ—Մամ, քաղցած եմ։

ՄԱՅՐԸ—Դե, ուրեմն, ընթրիր, աղջիկս։ Տեսնում ես՝ ես արդուկ եմ անում։

ՆԱՏԱ—Բա ի՞նչ ուտեմ։

ՄԱՅՐԸ—Ընթրիքը պահարանում է։

ՆԱՏԱ—Է՜, ես ճաշ եմ ուզում։

ՄԱՅՐԸ—Լավ, դու պահարանից հանիր հացը, պանիրը, աղը և ափսեները, իսկ կերակուրը խոհանոցումն է։

ՆԱՏԱ—Մամ ջան, դու բեր, է՛լի։

ՄԱՅՐԸ—Տեսնո՞ւմ ես, որ զբաղված եմ, ինչո՞ւ ինքդ չես բերում։

ՆԱՏԱ—Է՜, շա՞տ գիտեմ՝ որտեղ են։ Դե, լավ, որ այդպես է, քաղցած չեմ։

ՄԱՅՐԸ—Ինչպես թե քաղցած չես։ Ծուլանո՞ւմ ես հացը սեղանին դնել, ինչ է։ Դե, վերցրու, ահա, ճաշիր։

ՆԱՏԱ—Մա՜մ...

ՄԱՅՐԸ—Ի՞նչ է։

ՆԱՏԱ—Դու էլ արի ինձ մոտ։

ՄԱՅՐԸ—Ի՞նչ կա։ Արդուկն այրվում է։

ՆԱՏԱ—Ի՞նչ անեմ։ Անջատիր ու եկ։

ՄԱՅՐԸ—Ինչո՞ւ։

ՆԱՏԱ—Կերցրու ինձ։

ՄԱՅՐԸ—Ամոթ է, աղջիկս, դու հո փոքրիկ չե՞ս, որ քեզ կերցնեմ։

ՆԱՏԱ—Ախր, էլի ճաշը կթափեմ շորերիս։

ՄԱՅՐԸ—Ուրեմն անձեռոցիկ կապիր։

ՆԱՏԱ—Դու կապիր, էլի՜։



ՄԱՅՐԸ—Վա՜յ, Նատա, Նատա, դե, լավ, կե՛ր։

ՆԱՏԱ—Մա՜մ։

ՄԱՅՐԸ—Ի՞նչ է։

ՆԱՏԱ—Մենակ չեմ կարող ուտել, արի դու կերցրու։

ՄԱՅՐԸ—Եվ ինչպե՞ս չես ամաչում, մեծ աղջիկ ես։ Հետո, չե՞ս տեսնում, որ ես գործ եմ անում։

ՆԱՏԱ—Որ այդպես է, քաղցած չեմ, ընը՛, չեմ ուտում...

ԼԻՆՈՏԻՊԻԿ—Հիմա համոզվեցի՞ք։ Դե ինքներդ ասեք, ո՞ւմ են պետք նրա լավ երգելը, արտասանելը ու նկարելը, երբ Նատան, այդ մեծ աղջիկը, ինքնուրույն ուտել չգիտե։ Ծիծաղելի է չէ՞, բայց միայն ծիծաղելի չէ, զարմանալի է ու ցավալի։ Հո ամբողջ կյանքում նրան ուրիշները չե՞ն կերցնելու։ Ես կարծում եմ, որ Նատան վերջ կտա իր այդ սովորությանը։

Նկ. ԱՐՄԻՆԵ ԳԱԼԵՆՑԻ



# ՈՍԿԻ ՁՈՒԿ

ԹԵԿԼԱ ՄԱՅԵՐ-ԹԻՍԵՆ

Ժամանակով Դանիայում իշխում էր Վալդեմար Թագավորը։ Նա ուներ միայն մի աղջիկ, անունը՝ Մարգարետա։

Թագավորը շատ էր մտահոգվում, որ իրենից հետո երկիրը պետք է անցներ իր երիտասարդ, անփորձ աղջկա ձեռքը։ Այդ պատճառով նա մարդիկ է ուղարկում երկրի տարբեր կողմերը՝ խորհուրդներ հարցնելու։ Բայց չի գտնվում այնպիսի մեկը, որ խելացի մի խորհուրդ տա։

Եվ ահա մի անգամ Մարգարետան հանդիպում է մի ծեր, հիվանդ կնոջ և հարցնում, թե ինչո՞վ կարող է օգտակար լինել։ Ծեր կինը ջուր է խնդրում, և Մարգարետան շտապ վազում է մոտակա աղբյուրը ու իր սեփական բաժակով ջուր է բերում։ Պառավն անմիջապես կազդուրվում է, շնորհակալություն հայտնում բարի արքայադստերն ու ասում. «Արքայադուստր, դուք երկիրը կընդարձակեք և կերջանկացնեք, սակայն հարկավոր է, որ դուք ոսկի ձուկ գտնեք»։ Այս ասելով նա հեռանում է այնպես արագ, կարծես բոլորովին էլ ծեր ու թույլ չէր եղել։

Արքայադուստրը մտախոհ գալիս է տուն և իր հետ պատահածը պատմում է հորը։ Հայրը ուրախացած բացականչում է. «Հիմա ես կարող եմ հանգիստ մեռնել, որովհետև հաստատ համոզված եմ, որ դու լավ կկառավարես երկիրը»։

Կարճ ժամանակից հետո մեռնում է թագավորը, և Մարգարետան դառնում է թագուհի։

Հիմա թագուհին հիշում է ոսկի ձկի մասին պառավի ասածը։ Նա մարդիկ է ուղարկում՝ ոսկի ձկի մասին տեղեկություններ իմանալու։

Թագուհու մարդիկ անցնում են ամբողջ երկիրը, սակայն տարվելով միայն իրենց անձնական հաճույքներով՝ մոռանում են ոսկի ձկի մասին և վերադառնում դատարկ ձեռքով։

Այնժամ թագուհու մոտ են գալիս խորամանկ խորհրդականները և ասում.

«Քո բոլոր դրամիկները, թագուհի, բանի պետք չեկան։ Մենք ծեր ենք և փորձված։ Թող որ մենք գնանք»։

Խորհրդականները գնում են։ Նրանք ժողովրդից պահանջում են ցույց տալ բոլոր տեսակի թանկարժեք զարդերը և անգթորեն հավաքում են այդ բոլորը, վշտացնելով անպաշտպան ժողովրդին։ Եվ տուն են վերադառնում, իրենց հետ բերելով շատ ոսկի, բայց ոչ մի ձուկ։

Թագուհին շատ է տխրում։ Այդ ժամանակ նրա մոտ են գալիս վարդապետները և ասում. «Թույլ տվեք, որ մենք էլ գնանք ոսկի ձուկ փնտրելու։ Մենք աստծո ընտրյալներն ենք և անպայման կգտնենք ոսկի ձուկ»։

Խորհրդականների պակաս թողածը լրացնում են վարդապետները։ Նրանք էլ ետ են գալիս ծանր բեռներով։ Իրենց ճանապարհորդության մասին նրանք պատմում են թագուհուն՝ աչքները երկինք հառած, բայց փողը եկեղեցի են տանում։

Թագուհին հուսահատ նայում է լուսամուտի գոգը և արտասվում։ Նրան սփոփելու համար գալիս են ագռավները, սարյակները և փոքրիկ ծիծեռնակները։ Նստում են լուսամուտի փեղկերին ու ասում. «Լաց մի՛ լինի, թագուհի, մենք քեզ կօգնենք։ Մեկ շաբաթում մենք ծայրեծայր կանցնենք քո ամբողջ երկիրը, կնայենք բոլոր թռչունների բները։ Գուցե գտնենք ոսկի ձուկ»։

Թագուհին սրբում է իր արցունքները և հաստատապես համոզվում, որ այս անգամ ձեռք կբերի ոսկի ձուկ։

Ութ օրից հետո բոլոր թռչունները ետ են վերադառնում։ Նրանք այնքան շատ են լինում, որ ամբողջ երկինքը սևով են ծածկում։ Բայց ոչ կարմրատոտիկը և ո՛չ ուրախ ծիծեռնակը, ո՛չ կկուն և ո՛չ սիրելի սոխակը, ո՛չ սպիտակ աղավնիները և ո՛չ ագռավներից որևէ մեկը չեն բերում ոսկի ձուկ։



Թագուհին վշտից հիվանդանում է։

Եվ ահա մի օր, երբ նա պառկած էր իր ոսկյա մահճակալին և տխուր մտածում էր ոսկի ձվի մասին, հանկարծ նրան թվաց, թե մեկը կամաց ասում է. «Թագուհի, դուք անձամբ ինքներդ պետք է գնաք։ Միայն դուք կարող եք ոսկի ձուն գտնել»։

Նա կարծես թեթև ցնցվում է և ապա շուրջը նայում՝ ստուգելու, թե ով է իր հետ խոսողը։ Սակայն այնտեղ ոչ ոք չի լինում։ Այն ժամանակ թագուհին մտածում է, որ դա իր սեփական սրտի ձայնն է եղել։ Անմիջապես ցած է թռչում մահճակալից և նաժիշտներին հրամայում, որ մեկնելու պատրաստություն տեսնեն։



Պալատում կատարյալ տոնախմբություն է բռնկվում։

Խելացի թագուհին, իհարկե, ոչինչ չի ասում իր ուղևորության բուն նպատակի մասին, նա միայն ասում է, որ ցանկանում է իր մարդկանց հետ ճանապարհորդել։ Ծառաները կարծում են, թե թագուհին մոռացել է հիմար ձվի մասին։

Ահա ծիավարում է թագուհին իր երկրով մեկ։ Որտեղ նա երևում է, մարդիկ գլխով են անում, ծիծաղում և «կեցցե՛» գոռում։

Այսպես, ծիավարում է թագուհին ուրախության և ցնծության միջով՝ ինքն էլ է ուրախանում, ծիծաղում և կատակում։ Սակայն երբ հիշում է, որ ոսկի ձուն չի գտել, տխրում է։ Այս անգամ նա չի արտասվում, այլ նստում է մահճակալին և ականջ դնում, թե իր սիրտն ինչ նոր բան է ասելու։ Եվ իսկապես, երբ նա որոշ ժամանակ լռում է, նրա մեջ խոսում է նույն քնքույշ ձայնը. «Թագուհի, ձեր կատարած շրջագայությունն անիմաստ էր։ Դուք պետք է միայնակ գնաք, այն էլ՝ գիշերով։ Եթե այն ժամանակ էլ ոսկի ձուն չգտնեք, ուրեմն՝ հրաժարվե՛ք գահից»։

Թագուհին գիշերով մեն-մենակ ճանապարհ է ընկնում, վերցնելով միայն մի ծիծեռնակ իբրև ուղեցույց։

Ա՜խ, այս անգամ արդեն այլ պատկեր է բացվում թագուհու առաջ։ Փոքրիկ աղջիկները բոլորովին էլ մազերին ժապավեններ չունեին, այլ պատառոտված կոշիկներ, այն էլ առանց գուլպաների։ Էլ չէին ծածանվում գեղջկուհիների գոգնոցները, որովհետև նրանք կամ կռացած աշխատում էին դաշտում, կամ լվացք անում։ Գյուղացիներն էլ չէին գոռում «կեցցե»։

Այսպես, մեկ շաբաթ հետո թագուհին տխուր տրամադրությամբ վերադառնում է տուն։ Սակայն ի՜նչ աղմուկ-աղաղակի է հանդիպում նա պալատում։ Այնտեղ կյանքը շատ ուրախ էր։

Մյուս օրը փոթորկի պես տարածվում է թագուհու հրամանը. ասպետները պետք է դաշտ գնան, փողոցներ և կամուրջներ շինեն։ Խորհրդականները պետք է նոր օրենքներ գրեն։

Մեկ տարի հետո թագուհին նորից է հիշում ոսկի ձուն և զգուշորեն վեր կենում, գնում գոմը, դուրս է քաշում նժույգը, նշան անում իր ծիծեռնակին և դուրս գալիս պալատից։

Արդեն գեղեցիկ խճուղիներ էին կառուցվել, և գետերի վրա կամուրջներ ձգվել։ Գյուղացիներն այլևս առաջվա նման դժգոհ չէին և ժամանակ ունեին նայելու անցնող թագուհուն։

Սակայն նա դրանց հետ միասին տեսնում է ուրիշ բաներ էլ, որոնց մասին պատմում է իր

ուսին նստած ծիծեռնակին։ Խրճիթներում դեռ պառկած էին աղքատներ և հիվանդներ։ Կային այնպիսի գոմեր, որոնցում ոչ մի խոզ չկար, և թառերի վրա նստած էին միայն լղարիկ հավերը։

Թագուհին այդ բոլորը տեսնելուց հետո վերադառնում է պալատ և հրամայում հոգևորականներին, որ օգնեն հիվանդներին ու կարգի բերեն դպրոցները։ Ապա՝ եկեղեցու հաշվին կառուցում է ծերանոցներ, որպեսզի ծերերն իրենց կյանքի վերջին ժամերը չանցկացնեն խրճիթների մութ անկյուններում։ Եվ ինքը՝ Թագուհին, իր պալատական կանանց հետ նստում է գործում, կարում, որ բոլոր փոքրիկ աղջիկները և տղաները ձմռանը գուլպաներ և անդրավարտիքներ ունենան։

Եվ երբ երկրում ամառ է գալիս, Թագուհին կրկին գնում է իր երկիրը շրջելու։ Նա իր ծիծեռնակին թողնում է աշտարակում, որովհետև նրա բույնը լի է լինում փոքրիկ ճվճվաններով։

Ճանապարհորդության ժամանակ մի երեկո ուժեղ ամպրոպ է ճայթում, և Թագուհին պատսպարվելու համար մտնում է մի գյուղական խրճիթ։ Տանտիրուհին իսկույն դուրս է վազում, ձվածեղ անում, ապուխտ կտրում, կարագ, հաց բերում, մի աման կաթ դնում սեղանին և ասում. «Խնդրեմ, Թագուհի»։

Ձվածեղի ձվի դեղնուցը ուներ գեղեցիկ մուգ դեղին գույն, ինչպիսին կարող է ունենալ լավ սնված և լավ բնում պահված հավի ձուն։

«Այո, այո, Թագուհի, այն ժամանակվանից, ինչ դուք ժողովրդի մեջ դուրս եկաք, հավերը ոսկի ձվեր են ածում»։

Այժմ Թագուհի Մարգարետն մտածում է, որ ինքը գտել է ոսկի ձուն։ Թագուհու երկիր ղեկավարելու փառքը դուրս է գալիս իր երկրի սահմաններից։

Թագուհին մի մեծ ամբարտակ է շինում, որպեսզի ջրհեղեղը իր ժողովրդի տները չավերի և դաշտերը չհեղեղի։

Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Ահա այդ ժամանակ ափին է մոտենում մի նավ, մեջը երկու երիտասարդ։ Նրանք հիանում են Մարգարետի գեղեցկությամբ, բայց չեն իմանում, որ Թագուհին է։ Երիտասարդներից մեկը սիրահարվում է Թագուհուն և տեղնուտեղը նրա հետ ամուսնանալու առաջարկություն անում։ Թագուհին ծիծաղում է ու երիտասարդին խնդրում, որ երեք օր հետո ամրոց գա պատասխան ստանալու։

Թագուհին իր մտքում հրճվում է, պատկերացնելով, թե որքա՜ն կզարմանա երիտասարդը, երբ իրեն թագավորական գահին նստած տեսնի։

Զարմացողը, սակայն, լինում է ինքը՝ Թագուհին, երբ երեք օր հետո Կոպենհագեն է մտնում հեծյալների մի այնպիսի փառահեղ խումբ, որպիսին Թագուհին երբեք չէր տեսել։

Կենտրոնում ձիավարում էին երկու երիտասարդները։ Նրանք շատ գեղեցիկ էին, միաժամանակ իրար նման՝ ինչպես երկու ձու, միայն այն տարբերությամբ, որ մեկի աչքերը կապույտ էին, իսկ մյուսինը՝ շագանակագույն։ Փողհարները հնչեցնում են փողերը և հարցում անում Թագուհուն, թե նա ցանկանու՞մ է արդյոք Նորվեգիայի Հակոն Թագավորի հետ ամուսնանալ։ Դա մի ուրախություն էր՝ անակնկալ ուրախություն։ Թագուհին առանց վարանելու մոտենում է կապուտաչյա երիտասարդին և իր փոքրիկ, սպիտակ ձեռքով սեղմում նրա ձեռքը։ Դա էլ հենց նրա փեսացուն էր, իսկ մյուսը՝ նրա ընկերը։

Այսպես, ամրոցում և ամբողջ երկրում հարսանյաց հանդես է լինում։ Կոպենհագենում Թագուհու հետ միասին ամուսնանում են հարյուր աղջիկ և յուրաքանչյուրը մի փոքրիկ բնակարան նվեր ստանում։

Իսկ այն պատնեշը, որ կառուցել էր Թագուհին, դեռ այսօր էլ կանգուն է։ Այն կոչվում է Մարգարետի պատնեշ։

Գերմաներենից թարգմ. Հ. ՀԱԿՈԲՅԱՆ



# ՌԱԲԻՆԴՐԱՆԱՏ ՏԱԳՈՐ



Կա՞ ձեր մեջ որևէ մեկը, որ չհիանա Հնդկաստանի, կախարդական բնությամբ, երաժշտությամբ ու ճարտարապետական կոթողներով։

Այդպես հմայիչ ու հետաքրքիր է նաև հնդկական գրականությունը, որի մեջ ամենապատվավոր տեղը տրվում է մեծ գրող ու հասարակական գործիչ Ռաբինդրանատ Տագորին։

Տագորը ծնվել է 1861 թվականին, Կալկաթայում։ Լինելով կրթված և ունևոր մարդու զավակ, նա վաղ հասակում կարողացավ անհրաժեշտ գիտելիքներ ձեռք բերել, մի բան, որ շատ դժվար էր այն ժամանակվա խավար ու հետամնաց Հնդկաստանում։ Բարձրագույն կրթություն ստանալուց հետո, Տագորը ապրեց գյուղում, հայրական կալվածքում, ուր մոտիկից ծանոթացավ չարքաշ գյուղացու կյանքին, վշտակից եղավ նրա ցավերին։ Նա իր ծախսով դպրոց բացեց գյուղական մանուկների համար և ինքը դարձավ առաջին ուսուցիչը։ Այդտեղ Տագորը ստեղծեց իր առաջին լավագույն երկերը՝ բանաստեղծություններ, պատմվածքներ, պիեսներ։ Իսկ 1912 թվականին, երբ նրա բանաստեղծությունների գիրքը, որ ինքն էր թարգմանել անգլերեն, հրատարակվեց Լոնդոնում, Տագորն ստացավ Նոբելյան մրցանակ։ Հնդկական տարաշխարհիկ բնությունը, վառ պատկերավորությունը և արևելյան իմաստությունը շշմեցուցիչ տպավորություն թողեցին եվրոպացիների վրա։ Գիրքը թարգմանվեց մի շարք լեզուներով և Տագորին համաշխարհային հռչակ բերեց։

Տագորը հնդիկ ժողովրդի տառապանքների և իղձերի երգիչն է, նրա բողոքի ձայնը։ Այն ժամանակ Հնդկաստանը անգլիական գաղութ էր։ Լինելով մի կողմից գաղութարարների, մյուս կողմից հնդիկ ռաջաների ծանր լծի տակ, հնդիկ աշխատավորը զրկված էր տարրական իրավունքներից, և ոտնահարված էր նրա ազգային արժանապատվությունը։ Տագորը այն առաջավոր գրողներից և հասարակական գործիչներից մեկն էր, որ հանդես եկավ ընդդեմ բռնակալության, շահագործման և ազգային ճնշումների։ Իր «Գորա», «Խորտակում», «Վերջին պոեմը» և այլ վեպերում ու պատմվածքներում Տագորը արտացոլել է այդ պայքարը, կարեկցել լուսավոր կյանքի համար ընկածներին։ Եվ զարմանալի չէ, որ երբ Տագորը այցելեց Սովետական Միություն, հիացմունքով ողջունեց մեր երկրի աշխատավորության նվաճումները։

Տագորը մահացավ 1941 թվականին։ Այսօր ամբողջ աշխարհի առաջավոր մարդկությունը նշում է մեծ գրողի ծննդյան 100-ամյակը։

# ՏԵՏՐԸ

ՌԱԲԻՆԴՐԱՆԱՏ ՏԱԳՈՐ

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Հենց որ Ուման գրել սովորեց, բոլորովին ձեռքից գնաց: Նա բոլոր սենյակների պատերին ածուխով ծուռտիկ, անհամաչափ տողեր նկարեց. «Ջուրը հոսում է», «Տերևը դողում է»:

Եղբոր կնոջ բարձի տակից նա գտավ «Խորիդաշի գաղտնիքը» և գրքի յուրաքանչյուր էջում մատիտով գրեց. «Սև ջուր, կարմիր ծաղիկ»: Նոր օրացույցը, որից սովորաբար օգտվում էին տնեցիները, գրոտեց, կեղտոտեց ծայրից ծայր:

Հոր ծախսերի գրքում, զանազան հաշիվների միջև, Ուման էլ իր նշումները կատարեց. «Ով որ գրում է ու կարդում, նա կառքով է գնում»:

Որոշ ժամանակ ոչ ոք չխանգարեց նրա այդ ստեղծագործական աշխատանքը, սակայն մի անգամ Ումայի հետ պատահեց մի մեծ անախորժություն:

Նրա մեծ եղբայր Հոբինդոլալը, արտաքուստ բոլորովին աչքի չընկնող մի մարդ, թերթում հոդված տպագրեց: Հարազատներից և ծանոթներից ոչ ոք նրա հետ խոսելիս չէր կարծում, որ նա մտածող մարդ է: Մինչդեռ նա գրեց թերթում, և նրա դատողությունները լիովին համընկան բենգալական ընթերցողների մեծամասնության դատողություններին:

Մի անգամ, իմանալով, որ եվրոպական գիտնականների՝ անատոմիայի մասին աշխատություններում կան լուրջ սխալներ, Հոբինդոլալը առանց դիմելու տրամաբանության օգնությանը, միայն ներշնչանքի ուժով, շարադրեց մի հետաքրքիր հոդված, որով ջախջախեց այդ գիտնականներին:

Եվ ահա կեսօրին, երբ տանը ուրիշ ոչ ոք չկար, Ուման այդ հոդվածի վրա թանաքով մակագրեց. «Հոպալը շատ լավ տղա է. ինչ տալիս են նրան, այն էլ ուտում է»: Ես համոզված չեմ, որ Հոպալ անվան տակ նա ի նկատի ուներ Հոբինդոլալի ընթերցողներին, բայց եղբայրը դրանից սաստիկ կատաղեց: Սկզբում նա լավ դնքսեց Ումային, ապա նրանից խլեց մեծ ջանքերով ձեռք բերած գրենական պիտույքները՝ մի կտոր մատիտ ու բութ գրիչը, երկուսն էլ թանաքոտված: Վիրավորված աղջիկը ինչպես հարկն էր չհասկացավ, թե ինչի համար իրեն այդպես խիստ պատժեցին և, նստելով հատակին, սենյակի անկյունում, դառը-դառը լաց եղավ:

Վրեժն առնելով, Հոբինդոլալը Ումային վերադարձրեց խլած իրերը: Ապա փոքր-ինչ զղջաց և, ձգտելով աղջկան սփոփել, նրան նվիրեց մի հիանալի գծած տետր:

Այն ժամանակ Ուման յոթ տարեկան էր: Այդ ժամանակվանից նա խնամքով պահեց իր տետրը, գիշերը՝ բարձի տակ, իսկ ցերեկը՝ կրծքին:

Ուման իր տետրից չբաժանվեց նաև այն ժամանակ, երբ նրա ծամերը փոքրիկ հյուս արեցին և աղախնի ուղեկցությամբ ուղարկեցին գյուղի աղջիկների դպրոցը: Հասակակիցներից ոմանք նախանձում էին նրա գրելու հմտությանը, ոմանք զարմանում էին, իսկ ոմանց մեջ էլ դա ատելություն էր ծնում:

Ուսման առաջին իսկ տարում Ուման տետրի մեջ խնամքով գրեց. «Բոլոր թռչունները կանչում են, գիշերը վերջացավ»:

Ննջարանի հատակին նստած և տետրը ձեռքով ծածկած, նա գրում էր և բարձր, երգեցիկ ձայնով կարդում գրածը:

Այսպես հավաքվեցին պոեզիայի և արձակի շատ նմուշներ:

Երկրորդ տարում տետրի մեջ սկսեցին հանդես գալ նաև ազատ թեմայով շարադրություններ՝ հակիրճ, բայց ուշագրավ:

Անցավ ևս մեկ տարի... Մի անգամ առավոտյան տանը հնչեց ֆլեյտան. Ումայի հարսանիքի ժամանակը հասել էր:



[1] Տպագրվում է թեթև կրճատումներով:

Փեսացուն կոչվում էր Պերիմոխոն, նա Հոբինդոլալի օգնականն էր՝ նրա գրական աշխատանքներում։ Չնայած, որ ջահել էր և ինչ-որ բան սովորել էր, բայց և այնպես նոր գաղափարները չէին թափանցել նրա գլուխը։

Հագին Բենարեսի սարի[1] և քողը փոքրիկ դեմքին՝ Ուման հեկեկալով գնաց կեսրարի տունը։

— Զավա՛կս, հնազանդ եղիր կեսուրիդ,— ճանապարհ գցելիս ասաց մայրը,— արա՛ տանը, ինչ որ պետք է, իսկ որ գլխավորն է՝ մի՛ գրիր ու մի՛ կարդա։

Իսկ Հոբինդոլալը ավելացրեց.

— Տես. հա՛, չփորձե՛ս այնտեղ պատերը կեղտոտել. դա Հայլիսի տուն չի։ Եվ երբեք չգրես Պերիմոխոնի թղթերին։

Աղջկա սիրտը ճմլվում էր այդ խոսքերից։ Նա հասկանում էր, որ այն տանը, ուր ինքը գնում է, ոչ ոք չի ների նրա սխալները ու կանցնի մի քանի օր, և ինքը կիմանա, թե ինչն է այնտեղ սխալ համարվում, ինչը՝ զանցանք։

Այդ օրը ամբողջ առավոտյան երգեց ֆլեյտան բայց կասկածում եմ, աշխարհում գեթ մեկը կարողացա՞վ հասկանալ, թե ինչ է կատարվում տագնապով տրոփող սրտում այն փոքրիկ աղջըկա, որ հագել էր Բենարեսի սարի, զուգվել և երեսը քողով ծածկել։

Պառավ աղախինը գնաց Ումայի հետ։ Որոշված էր, որ Ջոշին աղջկա հետ մի քանի օր պետք է մնար կեսրարի տանը։

Բարի Ջոշին, երկար մտորումներից հետո, իր հետ վերցրեց նաև տետրը...

Կեսրարի տունը գալու սկզբնական շրջանում Ուման ոչինչ չէր գրում. ժամանակ չկար դրա համար։ Մի քանի օր հետո Ջոշին վերադարձավ Ումայի հորանց տունը։

Այդ օրը Ուման ծածկեց ննջարանի դուռը, թիթեղյա տուփից հանեց տետրը և, լալով գրեց. «Ջոշին գնաց տուն, ես էլ կգնամ մայրիկիս մոտ...»

Ումայի հայրը ուզում էր, որ աղջիկը երբեմն հյուր լինի իրենց մոտ, բայց Հոբինդոլալը և Պերիմոխոնը հակառակվում էին դրան...

Իմանալով այդ մասին, Ուման գրանցեց իր տետրում. «Ապե՛ր քո ոտքն եմ ընկնում, ինձ թող տուն գամ։ Էլ երբեք չեմ բարկացնի քեզ»։

Մի անգամ, ծածկելով դուռը, Ուման նստեց իր սենյակում և տետրում գրեց ինչ-որ պարզունակ, անմիտ խոսքեր։ Նրա տալը՝ Տիլոկմոնջորին, որը շատ հետաքրքրասեր էր, մտածեց. «Պետք է նայել, թե ինչու է նա փակում դուռը։ Ի՞նչ է անում այնտեղ»։

Տիլոկմոնջորին նայեց դռան ճեղքից, տեսավ, որ Ուման նստած գրում է, և շատ զարմացավ։ Դեռ երբեք Սարասվատին[2]. այդպես աննկատ չէր



թափանցել նրանց տան կանացի հարկաբաժինը։

Նրա փոքր քույր Կոնոկմոնջորին նույնպես մոտեցավ դռանը և սկսեց ծիկրակել։

Իսկ նրա հետևից եկավ և ամենակրտսեր քույրը, որին կանչում էին Օնոնկոմոնջորի։ Մեծ դժվարությամբ կանգնելով ոտքի ծայրերին, նա նայեց ճեղքից և տեսավ շատ ծիծաղելի մի բան։

Ուման նստել՝ գրում էր, երբ մեկ էլ դռան այն կողմից լսվեց ծանոթ ձայների քչփչոց և քմծիծաղ։ Նա իսկույն հասկացավ, թե՛ բանն ինչումն է։ Տետրը շտապ դրեց սարիի տակ և, ամոթից ու սարսափից հալվելով, դեմքը թաղեց անկողնու մեջ։

Իմանալով այդ մասին, Պերիմոխոնը լրջորեն մտահոգվեց։ Վայ է, թե կինն էլ սկսի գրել։ Ապա կհայտնվեն պատմվածքներ, դրա հետևից էլ՝ վեպեր, իսկ ո՞վ կզբաղվի տնտեսությամբ...

Երեկոյան Պերիմոխոնը եկավ Ումայի մոտ և ինչպես հարկն է նախատեց նրան։

Ուման լալու չափ հուզվեց և այդ խոսակցությունից հետո երկար ժամանակ ոչինչ չգրեց։

Մի անգամ, աշնանային մի առավոտ մորա-

[1] Կանացի զգեստ՝ Հնդկաստանում

[2] Սարասվատին հնդկ. դիցաբանության մեջ գիտության և արվեստի աստվածուհին էր։



ցիկ մի կին լուսամուտի տակ երգում էր Անամոնի երգը[1]։ Դեմքը հպած լուսամուտի ճաղերին, Ուման լուռ ականջ էր դնում։ Նա մենակ էր. շողում էր աշնանային արևը, և նրա միտն ընկավ մանկությունը։ Այլևս չկարողացավ զսպել իրեն

Ուման երգել չգիտեր, բայց այն ժամանակվանից, երբ գրել-կարդալ սովորեց, նրա մոտ սովորություն դարձավ գրի առնել լսած երգերը։ Նա այնքան էլ ցավ չէր զգում, որ երգել չգիտի։

Մուրացիկ կինը երգում էր պատուհանի տակ.

Անցորդն ասաց.— Ումայի՛ մայր,
Ահա կորած աստղիկդ ջինջ։
Քիչ մնաց, որ մայր թագուհին
Խեղքը թողներ խնդությունից։
«Ո՞ւր էիր դու, դստրի՛կ անգին,—
Լալով ասում էր թագուհին,—
Դե մո՜տս եկ, դե մո՜տս եկ,
Ծնկիս նստիր, մանկի՛կս հեզ...»
Եվ երկարեց ձեռքերն Ուման,

[1] Կրոնական երգ.

Կարոտակեզ գրկեց նրան
Ու շշնջաց ցավով, տրտում.
«Մայրի՛կ, ինձ ե՞րբ կտանես տուն»։

Ումայի սիրտը վշտով համակվեց, աչքերին նորից արցունքներ երևացին։ Նա ցածրաձայն կանչեց երգչուհուն, ծածկեց դուռը և, խնամքով քաշելով սառերը, սկսեց երգը գրի առնել իր տետրակում։

Բայց Տիլոկոմոնջորին, Կոնոկոմոնջորին և Օնոնկոմոնջորին ամեն ինչ տեսան դռան ճեղքից։ Նրանք ծափ զարկեցին ու կանչեցին.

— Իսկ մենք տեսնում ենք, թե դու այնտեղ ինչ ես անում։

Ուման արագ բաց արեց դուռը, դուրս եկավ սենյակից և լալագին աղերսեց.

— Ձեր ոտքի՜ն մեռնեմ, ո՛չ մեկին բան չասեք, էլ էդպիսի բան չեմ անի, էլ չե՛մ գրի։

Այդ ժամանակ նա նկատեց, որ Տոլոկոմոնջորին ձեռքը մեկնում է դեպի տետրը։ Ուման, տետրը կրծքին սեղմեց ու փախավ։

Նրանք ուզեցին ուժով խլել տետրը, բայց ինչքան փորձեցին, բան դուրս չեկավ։ Հարկ եղավ օգնության կանչել իրենց ավագ եղբորը։

Հայտնվեց Պերիմոխոնը և լուրջ դեմքով նստեց մահճակալին։

— Տո՛ւր տետրը,— ասաց նա ահեղ ձայնով և, տեսնելով, որ իր հրամանը չի կատարվում, նա ավելի բարձրացրեց ձայնը,— տո՛ւր, քեզ ասում եմ։

Աղջիկը տետրը սեղմել էր կրծքին և աղերսագին նայում էր նրան։ Երբ արդեն տեսավ, որ Պերիմոխոնը տեղից վեր կացավ, որ խլի տետրը, Ուման նետեց այն և ինքն էլ ընկավ հատակին, դեմքը ձեռքերով ծածկելով։

Պերիմոխոնը վերցրեց տետրը և սկսեց բարձրաձայն կարդալ այն, ինչ որ գրված էր այնտեղ։ Ամեն դարձվածքի հետ Ուման ավելի ուժգին էր սեղմվում հատակին, իսկ երեք աղջիկ ունկնդիրները բուռն քրքջում էին։

Այլևս Ուման չտեսավ իր տետրը։

Պերիմոխոնն էլ իր տետրն ուներ, բայց լեցուն խայթող նշումներով և, ցավոք սրտի, չկար ոչ ոք, որ նրանից խլեր այն ու ոչնչացներ։

Ռուսերենից թարգմ. Հ. ՀԱՐՅԱՆ





**Այ** քեզ հրա՜շք. մի՞թե նա առաջվա Գասիկն է, մի՞թե հնարավոր է այդպես փոխվել։ Զարմացել էին հարևանները, բարեկամները։ Դե, ինչպե՞ս չզարմանային, քանի որ նրանք միշտ լսել էին Գասիկի մայրիկի՝ Զարուհու տրտունջները. «Գասիկս հիվանդացել է», «Տղաս շատ վատ է ուտում, ինչ անում եմ՝ ախորժակը չի բացվում»։ Իսկ այժմ՝ էլ չի տրտնջում տիկին Զարուհին, էլ այնպես մտահոգ չէ նրա դեմքը։ Զարմացել էին նաև Գաբրիելի ուսուցիչները, դասընկերները։ Գաբրիելը հենց ինքը՝ Գասիկն է։ Տանը այդպես են կոչում նրան, իսկ Երևանի Հ. Հակոբյանի անվան դպրոցում՝ Գաբրիել Գաբրիելյան։

Գաբրիելը հազիվ փոխադրվեց 5-րդ դասարան։ Հենց որ վերցնում էր գիրքը կարդալու, քունը տանում էր։

— Հոգնե՞լ ես, բալիկ ջան,— անհանգստանում էր մայրիկը,— գնա՛, գնա՛, պառկիր, հանգստացիր։

Իսկ առավոտները հազիվ էր արթնանում Գաբրիելը։

— Օ՜ֆ, քունս տանում է, մայրիկ ջան,— հորանջում էր նա ալարկոտ և դանդաղ սկսում էր հագնվել։

Մի առիթով փոխվեց նրա օրվա ռեժիմը։ Դա սկսվեց այն օրից (ամռան արձակուրդների ժամանակ էր), երբ Գաբրիելի մորաքրոջ տղան ասաց, որ արշավի պիտի գնան։

«Ա՛յ քեզ բան,— մտածեց Գաբրիելը,— ես ո՞ր օրվա արշավի գնացողն եմ»։ Սակայն, երբ Վովան նրան հարցրեց. «Տղաներին ես տանում եմ արշավի, դու կգա՞ս մեզ հետ»— Գաբրիելը պատասխանեց.

— Իհարկե, կգամ։

Դե, հո չէ՞ր կարող հրաժարվել. ընկերները կծիծաղեին վրան։

Ու նա գնաց։ Սկզբից գոհ էր, հավասար քայլում էր մյուս տղաների հետ, բայց երբ սկսեցին բլուրն ի վեր բարձրանալ, Գաբրիելը ետ մնաց։ Շունչը կտրվում էր, սիրտը այնպես արագ էր բաբախում, կարծես թակարդն ընկած թփրտացող ծիտ լիներ։

— Շնչի՛ր համաչափ,— ասում էր Վովան,— բերանդ փակի՛ր, քթով շնչի՛ր։

«Համաչափ շնչելը ո՞րն է,— անցնում էր Գաբրիելի մտքով,— ես շնչում եմ, ինչպես կարողանում եմ։ Իսկ մի՞թե մեկ չէ՝ քթո՞վ ես շնչում, թե՞ բերանով»

Գաբրիելն արդեն քրտնել էր։ Շուտով նա բռնեց կողքն ու նըստեց գետնին։ Նա խեղճ-խեղճ մերթ նայում էր Վովային, մերթ՝ արդեն բլրի գագաթը հասնող Սուրիկին և մյուս տղաներին։

Գաբրիելը նորից մտածում էր. «Ո՞րն է գաղտնիքը. չէ՞ որ Սուրիկն էլ իր հասակակիցն է։ Նա չի հոգնում, իսկ ինքը հոգնում է»։

— Զարմանու՞մ ես, թե ինչու Սուրիկը չի հոգնում,— հարցրեց Վովան։

«Ինչպե՞ս իմացավ, որ իմ մըտքին էլ հենց այդ է,— մտածեց Գաբրիելը։— Դե, ասենք, Վովան ինձնից մեծ է, շատ բան է հասկանում»։

— Ուզո՞ւմ ես, դու էլ նրա նման լինել,— նորից հարցրեց Վովան։

— Հ՞ը... ուզում եմ,— հևալով պատասխանեց Գաբրիելը։

— Սուրիկը հաճախում է սպորտ-դպրոց։ Նա ամեն օր մարզվում է, դրա համար էլ այդպես ճարպիկ է ու առողջ։

— Ես էլ կգնամ սպորտ-դըպրոց։

— Քեզ կընդունեն, եթե առողջ լինես,— ասաց Վովան,— իսկ դրա համար հարկավոր է մարզվել, կոփել մարմինը։

— Որտե՞ղ։

— Տանը, ամեն առավոտ։

Վ. ԲԱԼԱՅԱՆ

# ԾՈՆ

Գաբրիելը հաստատ որոշեց կատարել Վովայի խորհուրդները, ամենից շատ նրա համար, որ մյուս անգամ բլուրը բարձրանալիս, չմնա ստորոտում, որ էլ ետ չմնա Սուրիկից և մյուսներից։

Ամեն առավոտ նա միացնում էր ռադիոն և լիցքային վարժություններ կատարում։ Բացի այդ. Վովան նրան այլ վարժություններ էլ էր սովորեցրել։

«Ջնայած դու նիհար ես, բայց քո կազմվածքն այնպիսին է, որ քեզնից լավ մարմնամարզիկ դուրս կգա,––ասել էր նա»։

Վովան միշտ հետաքրքրվում էր Գաբրիելի ինքնուրույն մարզումներով։

Մի անգամ էլ Գաբրիելը գանգատվեց.

— Այսօր մեջքս այնպես ցավում է, որ այլևս չեմ ուզում պարապել. ոնց որ մեկը ինձ մի լավ ծեծած լինի։

Վովան քմծիծաղ տվեց.

–– Հերոս, դու ինչու՞ երեկ և այսօր լիցքային վարժություններ չես արել։

— Դու որտեղի՞ց գիտես,— զարմացավ Գաբրիելը։

— Այդ դու ինքդ ասացիր։

— Ես քեզ այդպիսի բան չեմ ասել։

— Քիչ առաջ չասացի՞ր, թե մեջքդ ցավում է։

Գաբրիելը տմբտմբացրեց գլուխը։

— Պետք է անընդմեջ պարապել, թե չէ մեջքդ կցավի, և դու էլ ոչ մի արդյունքի չես հասնի։

— Ահա թե ի՜նչ,—ծոր տվեց Գաբրիելն ու շարունակեց,– ոչ. ես հաստատ որոշել եմ սպորտդպրոց ընդունվել և կընդունվեմ...

Օրերն անցնում էին օրերի հետևից։ Դպրոցում դասընկերները կարծում էին, թե պատահականություն է, որ Գաբրիելն այլևս չի ուշանում, կամ բացակայում, չի ննջում դասի ժամանակ, դասերը պատասխանում է առանց կմկմալու։ Զարմանալի բան. դա ոչ թե պատահականություն էր, այլ այդպես էլ շարունակվեց։ Հետո նա ընկերներին ասաց. որ ամեն օր լիցքային վարժություններ է անում, շփվում է սառը ջրով։ Իսկ երբ Գաբրիելը սկսեց հաճախել անվանի սպորտսմեն Հրանտ Շահինյանի ղեկավարած պատանի մարմնամարզիկների դպրոցը, բոլորովին փոխվեց։ Էլ ո՞վ կարող է ասել, թե նա թույլ է, մի փոքր մրսելուց հիվանդանում է, ո՞վ կարող է ասել, թե նա ախորժակ չունի, առավոտները ուշ է արթնանում։

Հ. Հակոբյանի անվան դպրոցի 7-րդ դասարանի աշակերտ Գաբրիել Գաբրիելյանը այժմ դպրոցի առաջավոր աշակերտների շարքումն է։

— Գասիկս ոնց որ հրաշքով ուրիշ մարդ դարձավ,—հարևաններին ասում է նրա մայրիկը,–– զարմանում եմ, տղաս այնպես ախորժակով է ուտում, բայց չի գիրանում, էլի այն նիհար-միհար Գասիկն է, բայց էլ չի նվնվում, չի հիվանդանում, փոխվել է բնավորությամբ էլ։

Ճիշտ է, Գասիկը, այսինքն՝ Գաբրիելը, էլի վտիտ կազմվածքով է, բայց այժմ պիրկ են նրա մկանները. առողջ են թոքերն ու սիրտը։ Ավելորդ չի՞ լինի ասել, թե ինչու է նրա միտքն այժմ այնպես թարմացել, աշխուժացել. դե ո՞ւմ հայտնի չէ այս ճշմարտությունը. «Առողջ մարմնի մեջ՝ առողջ հոգի»։

Կա՞ն այնպիսի աշակերտներ, որ կասկածի տակ են առնում այս ճշմարտությունը։ Այդպիսիներին խորհուրդ ենք տալիս շատ դես ու դեն չընկնել։ Գնացեք պատանի մարմնամարզիկների դպրոց, դիտեցեք Գաբրիելի և նրա ընկերների մարզումները։ Դուք կհիանաք, երբ տեսնեք, թե ինչպիսի վարժություններ են կատարում նրանք։ Գնացեք այն դպրոցները, որտեղ սովորում են պատանի մարմնամարզիկները, բացեք մատյաններն ու տեսեք, թե ինչպիսի գնահատականներ են ստանում նրանք։ Հավատացած եղեք, այնտեղից էլ հիացած դուրս կգաք։ Եվ եթե այդ բոլորից հետո, վճռեք Գաբրիելի նման սկսել լիցքային վարժություններից, ալարկոտություն չանեք։ Պարապեցե՛ք սիստեմատիկ, թե՛ չէ կցավի ձեր մեջքը, ինչպես մի ժամանակ Գաբրիելի մեջքն էր ցավում, և դուք ոչ մի արդյունքի չեք հասնի։ Ու երբ այդ բոլորից հետո դուք էլ ամռան արձակուրդի օրերին դուրս գաք արշավի, տեսնելով ազատ կերպով սարը բարձրացող ձեր ընկերներին ու փոքրիկ բլրի տակ. շնչասպառ հևացող մյուս ընկերոջը, էլ զարմացած հարց չեք տա. ո՞րն է գաղտնիքը, ինչո՞ւ մեկն այնպես ճարպիկ է ու առողջ, իսկ մյուսը՝ թուլակազմ, շուտ հոգնող։

# Է ԳԱՂՏՆԻՔԸ

# ՃԱՐՏԱՐ ձեռքեր

ԱԻԴԱ ՎԱՐԴԱՆՅԱՆ



**Փ**ոքրիկ, մանկապարտեզային աթոռիկներ, որոնց վրա նստելու են երեխաներ՝ գոգնոցներին ասեղնագործ աղվեսիկներ, բադիկներ ու շնիկներ: Եվ այս բոլորը պատրաստում են պատանիներ, որոնք մի քանի տարի սրանից առաջ նույնպես նստում էին այդպիսի աթոռիկների վրա ու հավատում, որ շնիկները կարող են զրուցել իրենց հետ, բադիկները՝ հեքիաթներ պատմել, իսկ աղվեսները, խորամանկ աղվեսները գիթառի նվագակցությամբ՝ երգեր երգել ու խաբել անխելք հավերին:

Պատանիները աշխատում են: Աշխատում են տարված, անգամ չեն նկատում, որ նոր մարդ է ներս մտել և դիտում է իրենց աշխատանքը: Տախտակի կտորները դազգահի վրա հարթվում, կոկվում և ձև են ստանում: Ամեն ինչ այստեղ պատրաստվում է մեծ սիրով և խնամքով:

Արհեստանոցը լցված է ուրախ աղմուկով, տղաները միմյանցից գործիքներ են խնդրում, հպարտությամբ ցույց տալիս իրենց պատրաստածը: Մեկը բարակ սղոցով տախտակե նախշազարդ է կտրել, որը լինելու է սրբիչակալ, մյուսը ծաղկամանի պատվանդան է պատրաստել և նկարչական խմբակի իր ընկերոջը խընդրել, որ ներկի, նա էլ նստած արվեստանոցի մի անկյունում՝ ներկում է:

Մի պահ թվում է, որ ոչ թե դպրոցի գործնական առարկաների դասասենյակում եմ, այլ փայտամշակման փոքրիկ մի գործարանում, ուր աղմկում են դազգահները, մեկը մյուսի հետևից պատրաստվում իրեր, որոնք տարվելու են խանութները՝ վաճառվելու: Բայց ես Երևանի Հակոբ Հակոբյանի անվան դպրոցում եմ, և դասատու Ալեքսանյանն իր բացատրություններով ցրում է այդ տպավորությունը ու ինձ վերադարձնում նորից դպրոցի ու աշակերտների աշխարհը: Այստեղ դպրոցականները ոչ միայն նոր իրեր են պատրաստում, այլև վերանորոգում են աշակերտական կահույքը՝ նստարաններ, գրատախտակներ, սեղաններ, կախիչներ և այլն:

— Ռանդան տուր ինձ,— ասում է գանգրահեր Վարդգեսը, հարթաչափով հղկված տախտակը ստուգելուց հետո:

— Ի՞նչ կա,— զարմացած հարցնում է Հովհաննեսը:

— Մի փոքր թեք է,— պատասխանում է գանգրահերը:

— Չի նկատվի, ներքևի մասում է լինելու:

— Հետո ի՞նչ, որ ներքևի մասում է, ամեն ինչ պետք է կարգին լինի,— մեծավարի խոսում է Հովհաննեսը:

Նա երևի խմբակի տեխնիկական հսկողն է: Իհարկե, դա այդպես չէ, բայց երբ ես արդեն մի անգամ դասասենյակը գործարան եմ պատկերացրել, այս վեցերորդ դասարանցի տղային էլ հսկիչ եմ կարծում: Բայց հենց այդ պահին սենյակի մյուս անկյունից տղաներին է մոտենում Դավթյան Հրանտը, որն արդեն գրավել էր իմ ուշադրությունը:

Երբ մենք նոր էինք ներս մտել, և Ալեքսանյանը ինձ բացատրում էր, թե որ հաստոցը ինչի համար է, Հրանտը, փայտի մի կտոր ձեռքին, մոտեցավ փայտերը ձևավոր տաշող էլեկտրական հաստոցին: Եվ հիմա փայտի այդ կտորը տաշվել, հղկվել և ձևավորվել է, սերվանտի սյունիկներից մեկն է:



Լուսանկարները՝ ԶՈՆԻԿ ՍԱՐԳՍՅԱՆԻ

— Այդ ե՞րբ հասցրիր,— հարցնում եմ ես:

— Դե, սա ի՞նչ է որ…

— Հապա մի տեսնենք ինչպե՞ս ես պատրաստել,— ասում է Ալեքսանյանը և վերցնելով աշխատանքը, ուշի ուշով զննում: Նրա դեմքի արտահայտությունից երևում է, որ գոհ է տղայից:

Ահա և Թորոսյան Առաքելի պատրաստած պատվանդանի կողքերը այնքան գեղեցիկ են, որ կարող են մրցել նուրբ ժանյակի հետ: Նա շատ բծախնդիր է և այնպես զննող աչք ունի, որ ոչ մի մանրամասն չի վրիպի նրա տեսողությունից: Դրան գումարած բարձր ճաշակը, աշխատասիրությունը և շնորհալի ձեռքերը:

Փայտամշակման խմբակի բոլոր տղաներն էլ շնորհալի ձեռքեր ունեն: Այդ մասին պատմում են պիոներական սենյակում ցուցադրված բազմաթիվ մակետները՝ գրքի պահարան, գրասեղան, ճաշասեղան, բուֆետ, բազմոց, ծաղկամանների և արձանիկների պատվանդաններ, վերջին նորաձևության սերվանտ, որով մասնակցել են ցուցահանդեսի և շահել երկրորդ մրցանակ: Այդպիսի սերվանտ բոլոր մայրիկներն էլ հաճույքով կդնեին իրենց բնակարանում: Պիոներական սենյակը շատ մեծ չէ, բայց կահավորված է ինչպես հարկն է: Այստեղ ամեն ինչ աշակերտներն են ստեղծել: Ասեղնագործ վարագույրները պատրաստել են կարուձևի խմբակի աշակերտուհիները: Աջ կողմում, պատի երկայնքով ձգվում է խաղապահարանը, որը դարձյալ ատաղձագործական և փայտամշակման խմբակների անդամների միացյալ ուժերով է պատրաստված: Այն շատ կոկիկ է, նորաձև և հարմար: Փայտամշակման խմբակում մեծ մասամբ 6-րդ և 7-րդ դասարանների աշակերտներն են: Նրանք չեն մոռանում նաև իրենց փոքրիկ բարեկամներին, արդեն հարյուր աթոռիկներ են պատրաստել և նվիրել մանկապարտեզի երեխաներին և դեռ այդքան էլ պետք է պատրաստեն:



# ԵՐԵԽԱՆ ՓՐԿՎԵՑ

*Այս տարվա մարտի 15-ին էր, օրը ցուրտ էր, ամպամած: Հանկարծ գյուղում լուր տարածվեց, թե կորել է չորսամյա Սիմոնիկը: Կեսօրից մինչև հաջորդ առավոտ մեր գյուղացիների և շրջանից եկած միլիցիոներների որոնումները ապարդյուն անցան: Իմանալով այդ մասին, 15 պիոներներով, համագյուղացի Պողոսյան Սպարիկի ղեկավարությամբ, գնացինք որոնելու կորած փոքրիկին: Դուրս եկանք դաշտ և բաժանվելով խմբերի, սկսեցինք փնտրել նրան գետակի աջ ու ձախ ափերում:*

*Հանկարծ լսեցինք դրուժիննիկ Վալերիկ Բաբաջանյանի ձայնը.*

*— Եկե՛ք, եկե՛ք…*

*Նա ուրախությունից չկարողացավ այլևս շարունակել: Մենք կռահեցինք, որ նա գտել է երեխային, և վազեվազ մոտեցանք:*

*Սիմոնիկը բերանքսիվայր ընկած էր գետակի ափին, ոտքերը ջրի մեջ: Կողքին պառկած էր հարևանի շունը: Շունը թրջված էր, իսկ երեխայի թևը՝ քերծված: Պարզ է, որ նրան ջրից հանել էր շունը: Սիմոնիկը ցրտից փայտացել էր, սակայն աչքերը բաց էին, և դեռ շնչում էր: Նրան անմիջապես տարանք տուն, որը մոտ երեք կիլոմետր հեռու է գետակից: Հետո Սիմոնիկին տեղափոխեցինք հիվանդանոց, և նրա կյանքը փրկվեց: Երեխայի ծնողները շատ գոհ մնացին մեզանից: Հայրը Հայրենական պատերազմի հաշմանդամ է, իսկ մեզ համար ուրախալի էր, որ այդ դժբախտության օրը որևէ բանով նրան օգտակար եղանք:*

*ԱՆԱՀԻՏ ՎԱՐԴԱՆՅԱՆ*
*(Ազիզբեկովի շրջանի Զառիթափ գյուղի 7-րդ դասարանի աշակերտուհի)*



*Նկ. Դ. ՍԱՐԳՍՅԱՆԻ*




## ԱՆԺԱՄԱՆԱԿ ՆԱԽԱՏԻՆՔ

*Մի երիտասարդ լողանալիս շատ հեռու գնաց, քիչ էր մնում խեղդվեր։ Նա օգնության կանչեց մի անցորդի։ Բայց օգնելու փոխարեն, անցորդն սկսեց նախատել նրան.*

*— Որ լող տալ չես կարող, ինչու ես մտնում ջուրը։*

*Տղան պատասխանեց.*

*— Նախ օգնիր ինձ, հետո քարոզ կարդա։*

*Դժբախտության մեջ ընկած մարդուն նախ պետք է օգնել, հետո նախատել։*



Նկ. ՍԵՅՐԱՆ ԽԱԹԼԱՄԱՋՅԱՆԻ

## ԵՐԵՔ ՕՁ



*Մի մարդ տեսնում է, որ երկու օձ կատաղի կռվում են։ Այդ պահին կռվադաշտ է սողում երրորդը, ցանկանալով մեջ խառնվել։*

*«Երևում է, որ այս օձը լավը չէ այն երկուսից, թե չէ՝ ինչու պիտի մեջ ընկներ» — մտածում է մարդը։*

*Վատ մարդը միշտ փնտրում է իր նմաններին։*

Ռուս. թարգմ. ՎԱՐՈՒԺԱՆ ՏԱՐՈՆՑԻ





## ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

*Որքան շատ են մեզ շրջապատող և դեռ չլուծված հանելուկները։ 18-րդ դարի սկզբներին, երբ եվրոպական շուկայում փղոսկրը սկսեց մեծ գին ունենալ, հարյուրավոր արշավախմբեր շտապեցին Աֆրիկա ու Հնդկաստան փիղ որսալու կամ մահացած փղեր գտնելու համար։ Հասկանալի է, որ փղի՝ վտանգավոր որսով զբաղվելու փոխարեն, եթե հնարավոր լիներ գտնել, ասենք, մի քանի տասնյակ դիակ, ապա հեշտությամբ կարելի կլիներ հանել նրանց ժանիքները և մեծ հարստություն դիզել։ Սակայն բոլոր արշավախմբերի որոնումները ապարդյուն անցան։ Եվ մինչև այսօր էլ ոչ մեկին չի հաջողվել գտնել բնական մահով մահացած գոնե մեկ փիղ կամ փղերի գերեզմանոցներ։ Կարծիքներ կան, որ փղերն զգալով իրենց մահը նետվում են ճահիճը, անդունդները կամ հեռանում են մարդկանց համար անմատչելի վայրեր։ Բայց դա միայն ենթադրություն է։*

*Այդպիսի մի հանելուկ է նաև աղավնիների՝ կողմնորոշվելու ունակությունը։ Դեպքեր են եղել, երբ աղավնին վերադարձել է 150*

կիլոմետր հեռավորությունից: Փորձեր են արել աղավնուն տանել պատված վանդակի մեջ, բոլորովին փակ վանդակում, գիշեր ժամանակ, նույնիսկ ուժեղ նարկոզի տակ, թմրած վիճակում, սակայն արդյունքները միշտ եղել են միևնույնը. աղավնին հիանալի կերպով կարողացել է վերադառնալ: Ինչպե՞ս է նա կարողանում կողմնորոշվել, ոչ ոքի հայտնի չէ:

1879 թվականին Խաղաղ Օվկիանոսում բռնվեց մինչ այդ անհայտ ձկան մի տեսակ, որը քառակուսի թեփուկների պատճառով կոչվեց «Աղյուս—ձուկ»: Այնուհետև ոչ մի հատ չհայտնաբերվեց: Որոշ ժամանակ անց, ձկան այդ տեսակը հայտնվեց այնպիսի մեծ քանակությամբ, որ սկսեցին որսալ և վաճառել: Այդպես շարունակվեց մինչև 1882 թվականը, երբ ձկնորսները զարմանքով նկատեցին, որ օվկիանոսի մի մեծ հատված 500 կմ երկարությամբ և 100 կմ լայնությամբ ծածկված է այդ ձկան դիակներով:

«Աղյուս-ձուկը» 33 տարի այլևս չհանդիպեց ոչ մի տեղ: Եվ հանկարծ 1915 թվականին կրկին հայտնվեց այնպիսի վիթխարի քանակությամբ, որ դարձյալ սկըսեցին արդյունահանել: Որտեղի՞ց էր գալիս այդ ձուկը, ինչի՞ց էր տեղի ունեցել 1882 թվականի ահռելի կոտորածը, ինչու՞ մերթ անհետանում և մերթ նորից հայտնվում էր, մնում են անպատասխան:

Ահա և մի ուրիշ հանելուկ: Դու, անշուշտ, լսել ես, որ Փարիզում գոյություն ուներ Բաստիլիա անունով մի զարհուրելի բանտ, որտեղ ընկնողները մեծ մասամբ կենդանի դուրս չէին գալիս: 1690 թվականին այդտեղ բերվեց մի կալանավոր: Սա դեմքին երկաթե դիմակ ուներ, որը երբեք չէր հանում: Նրան այցելող բժիշկը հետագայում պատմել է, որ ինքը 6 տարվա ընթացքում այդ մարդու դեմքը չի տեսել: Հանելուկային բանտարկյալի հետ վարվում էին հարգանքով: Նրան իրավունք էր տրված նույնիսկ սպասավոր ունենալ, այցելության եկող բարձրաստիճան անձինք նրա հետ խոսում էին ոտքի վրա կանգնած: Կալանավորը, որը գրականության մեջ ստացել է «Երկաթե դիմակ» անունը, մահացավ Բաստիլիայում, 1703 թվականի նոյեմբերի 19-ի գիշերը և գիշերով էլ թաղվեց: Այս մասին գրվել են բազմաթիվ գրքեր, արվել են շատ և շատ ենթադրություններ, սակայն «Երկաթե դիմակի» ով լինելը դեռևս գաղտնիք է մնում:

Ս. ՇՏԻԿՅԱՆ




Մենք ամեն օր մաքրում ենք մեր բնակարանների փոշին: Իսկ որտեղի՞ց է առաջանում այն: Պարզվում է, որ մեզ շրջապատող իրերը աննկատելի կերպով քայքայվում և ավերվում են: Փողոցում առաջանում են բացիլներով լի փոշեամպեր, որոնց միանում է շինարարության փոշին:

Գործարանների ծխնելույզներն անընդհատ մուր ու փոշի են արտաշնչում: Արդյունաբերական քաղաքների և թաղամասերի վրա շարունակ նստած է փոշու թանձր ամպը:

Ամեն օր մեր մոլորակի վրա տիեզերքից թափվում է մոտ հարյուր տոնն փոշի:

Մարդկությունը փոշու դեմ պայքարում է զանազան եղանակներով: Ավտոմեքենաները կիսափանվեն իսկույն, եթե հակագազի նման մի ֆիլտր մոտոր գնացող օդը չմաքրի փոշուց: Խոշոր քաղաքներում հարյուրավոր ջրցան և մաքրող մեքենաներ քերում, ավլում և լվանում են քաղաքի փողոցները:

Խոշոր գործարաններում հերթապահի պես կանգնած են փոշեծծիչները: Այժմ արդեն փորձում են բռնել ածխի փոշին, որ դուրս է գալիս գործարանների ծխնելույզներից:

Շատերը չգիտեն, որ շաքարը կարող է պայթել և ավերել շաքարի գործարանը: Այն ցեխը, որ սղոցում են շաքարը, լիքն է շաքարի նուրբ փոշով: Բավական է մի կայծ, և ամբողջ ցեխը հօդս կցնդի, ավերելով ողջ գործարանը: Կա ևս մի անսովոր պայթուցիկ նյութ. դա սովորական ալյուրն է, որը երբեմն ջրաղացում պայթում է ահավոր ուժով:

Թնդանոթները կրակելիս առաջացնում են պայթյուն, այդ հայտնի է բոլորին, բայց որ թնդանոթով կարելի է կանխել պայթյունը, բոլորը չէ, որ գիտեն: Բայց կան այդպիսի թնդանոթներ: Հորատման աշխատանքի ժամանակ ածխափոշով է լցվում ածխահանքը: Դրա համար թրջում են հանվող ածուխը, բայց դա քիչ է օգնում: Մինչդեռ ածխափոշին որևէ կայծից կարող է բռնկվել և պայթյուն առաջացնել:

Հանքահորի միջանցքում պատրաստի կանգնած է մի թնդանոթ, որի փողը լցված է կրաքարի փոշով: Իսկ կիրը այրվելու ընդունակ չէ: Այդ թնդանոթը ականջները սրած սպասում է: Եթե հանկարծ որևէ տեղից դեպի այդ միջանցքն է գալիս պայթյունի ազդանշանը, ապա այդ թնդանոթը կրաքարի փոշու մի վիթխարի ամպ է կըրակում դեպի պայթյունը: Այդ չայրվող փոշին կլանում է հսկայական ջերմություն:

Թ. ԹԱԴԵՎՈՍՅԱՆ




**Կ**ենդանիների մեջ սագերը և բադերը «ցրտադիմացկուններից» ամենաուժեղն են։ Նորվեգական գիտնականների փորձերից հայտնի է դարձել, որ նրանք կարող են դիմանալ մինչև 110° ցրտության, սպիտակ արջերը և փոկերը՝ մինչև —80°, իսկ կաթնասունների մեծ մասը —45°-ից ավել չի կարող տանել։

**Խ**ողուկը չի կարող սուզվել ջրի մեջ, եթե նույնիսկ ցանկանա։ Նրա բազմաթիվ փշերը լցված են օդով, և դա օգնում է նրան մնալ ջրի վրա։

**Դ**ոդոշները սնունդը կուլ են տալիս արտակարգ արագությամբ։ Կինոնկարահանման միջոցով հաշվված է, որ դոդոշը մեկ րոպեում կատարում է 4000 ծամելու շարժում։ Մարդկային աչքը ի վիճակի չէ հետևել այդ շարժումներին։

**Մ**արդու օրգանիզմը իրենից ներկայացնում է քիմիական մի ֆաբրիկա, որը շրջապատող օդից կլանում է թթվածին և արտադրում ածխաթթու գազ։ Առողջ, հասունացած մարդու թոքերի միջով հանգիստ ժամանակ օրական անցնում է 11.000 լիտր օդ։ Աշխատանքի ժամանակ այդ քանակը աճում է 3—4 անգամ ավելի։

Բույսերը, ինչպես նաև որոշ մանր օրգանիզմներ, նույնպես ֆաբրիկաներ են, որոնք օդից կլանում են ածխաթթու գազ և արտադրում են թթվածին։ Այդ ֆաբրիկաները տարեկան արտադրում են 10.000 միլիոն տոնն ազատ թթվածին։

Եթե Երկրի երեսից վերանա բուսականությունը, ապա 3 տարուց հետո մթնոլորտում ազատ թթվածին չի մնա։ Մեկ տարվա ընթացքում երկրում ապրող օրգանիզմների միջոցով անցնում է այնքան ազատ թթվածին, որքան կա Երկրի մթնոլորտում։

**Ռ**ադոնը ամենահազվագյուտ գազն է։ Ամբողջ մթնոլորտում կա ընդամենը մոտ 3 կգ ռադոն։ Ռադոնը միաժամանակ ամենածանր գազն է, 111,5 անգամ ծանր է ջրածնից՝ ամենաթեթև գազից։

Մթնոլորտում ամենից շատ կա ազոտ։ Իսկ տիեզերական տարածությունում ամենատարածվածը ջրածինն է, այն կազմում է տիեզերքի ողջ նյութերի մոտ 90 տոկոսը։

**Ա**մազոնի ավազանում աճում է մի ծառ, որին տեղի բնակիչներն անվանում են սորվեյրա՝ «ծծիչ»։ Բավական է դանակով մի կտրվածք անել այդ ծառի վրա, որ սպիտակավուն թանձր հեղուկը դուրս ցայտի նրա միջից։ Բայց դառնության պատճառով մարդիկ այն համարում էին թունավոր ու չէին օգտագործում։

Բուսաբանները անալիզի ենթարկելով սորվեյրայի հյութը, հաստատեցին, որ իր քիմիական բաղադրությամբ այն շատ նման է կովի կաթին։ Եթե այդ հյութը բացեն ջրով և եռացնեն, դառնահամությունը կանհետանա և կարելի կլինի օգտագործել սննդի համար։

**Հ**նդկաստանում և Հարավային Աֆրիկայում կան ծառեր, որոնց արտադրած հյութը եռացնելիս ստացվում է կարագ։ Այդպիսի կարագը կարելի է մի քանի ամիս անվնաս պահել առանց աղի՝ այն էլ այդ տաք երկրներում։

**Մ**ադագասկար կղզում էլ գտնվում է մի ուրիշ հրաշալի ծառ, որը կոչվում է ճամփորդների ծառ։ Այս ծառն իր մեջ պարունակում է մեծ քանակությամբ ջինջ ու սառը ջուր և ճանապարհորդների համար ծառայում է իբրև աղբյուր։



*Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ*

# ՇԱԽՄԱՏԱՅԻՆ խճանկար



Մատ երկու քայլից



№ 1



№ 2



№ 3

Առաջարկ՝ ՌԱՖԱՅԵԼ ՕՀԱՆԵՍՅԱՆԻ

## ԿԱԽԱՐԴԱԿԱՆ ՀԱԲԵՐ

Մի քանի տարի առաջ մոսկվացի դինամոյականները Ստոկհոլմում ֆուտբոլ խաղացին Շվեդիայի «Նորչեպինգ» լավագույն թիմի հետ։ Դաշտի տերերը խաղը տանուլ տվեցին 1։5 հաշվով։

— Սովետական ֆուտբոլիստները ինչ-որ կախարդական հաբեր էին ընդունում,—հայտարարեցին շվեդացիները։

Պարզվեց, որ «կախարդական հաբերը» սովորական շաքարի կտորներ են եղել։ Սպորտսմենները լավ գիտեն դրա հրաշագործ ուժը։ Խիստ հոգնածության կամ քաղցի ժամանակ մի քանի կտոր շաքարը վերականգնում է ուժերը։

## ՀԱՋՈՂՈՒԹՅԱՆ ԳԱՂՏՆԻՔԸ

Մի անգամ հայտնի ֆիննական դահուկորդ Վեյկո Հակուլինենին հարցրին.

— Ի՞նչ պետք է անել հաղթանակ տանելու համար։

— Շատ պարզ,— պատասխանեց չեմպիոնը,—պետք է վազել հակառակորդից փոքր-ինչ արագ։

## ՇԱԽՄԱՏԻ ՀՆԱՐԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ



Դուք երբևէ առիթ չե՞ք ունեցել հաշվելու, թե քանի կոմբինացիա գոյություն ունի շախմատային խաղում։ Իսկ դա հետաքրքիր է։ Եթե աշխարհում ապրող բոլոր մարդիկ ամբողջ օրը շախմատ խաղան և յուրաքանչյուր վայրկյանում մեկ քայլ կատարեն, նրանք չեն կարող սպառել շախմատի՝ գոյություն ունեցող բոլոր հնարավոր կոմբինացիաները։

## ԳԻՏԵ՞Ք ԱՐԴՅՈՔ

Հնդկական ցեղերից մեկի սիրած զբաղմունքը նապաստակ որսալն է։ Հնդկացին որսը կատարում է առանց զենքի և նետ ու աղեղի։ Նա նապաստակին հետապնդում է այնքան, մինչև որ վերջինս հոգնածությունից վայր է ընկնում։





## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝
Նկ. ԱՐՄԻՆԵ ԳԱԼԵՆՑԻ

# ԲԱՑ ՄՐՑԱՆԱԿԱԲԱՇԽՈՒԹՅՈՒՆ

*Վ. Ի. Լենինի անվան պիոներական կազմակերպության 40-ամյակի առթիվ «Պիոներ» ամսագրի խմբագրությունը հայտարարում է պատանիների ստեղծագործությունների՝ պատմվածքների, բանաստեղծությունների և նկարների*

## ԲԱՑ ՄՐՑԱՆԱԿԱԲԱՇԽՈՒԹՅՈՒՆ

*Մրցանակաբաշխությանը կարող են մասնակցել մինչև 15 տարեկան բոլոր երեխաները։*

*Խմբագրության հավանությանն արժանացած պատմվածքները, բանաստեղծությունները ու նկարները նախ կտպագրվեն ամսագրում, ապա նոր կորոշվի, թե որ գործին տալ այս կամ այն մրցանակը։*

*Մրցանակաբաշխության նյութերը պետք է ուղարկել 1961 թ. հունիսի 1-ից մինչև 1962 թ. մարտի 1-ը։ Տպագրությունը կսկսվի 1961 թ. սեպտեմբերից և կավարտվի 1962 թ. ապրիլին, իսկ մրցանակաբաշխության արդյունքները կհրապարակվեն մայիսին։*

ՍԱՀՄԱՆՎԱԾ ԵՆ ՀԵՏԵՎՅԱԼ ՄՐՑԱՆԱԿՆԵՐԸ.

Երեք առաջին կարգի մրցանակ
Վեց երկրորդ կարգի մրցանակ
Եվ տասը՝ երրորդ (խրախուսական)։

*Մրցանակները կլինեն՝*

*Լուսանկարչական ապարատներ, ինքնահոս գրիչներ, նկարչական պիտույքներ, գեղարվեստական գրքեր և այլն։*

*Մեր հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, «Պիոներ» ամսագրի խմբագրություն, մրցանակաբաշխության ժյուրիին։*

*Նյութերն ուղարկելիս՝ չմոռանաք նշել ձեր տարիքը։*

«ՊԻՈՆԵՐ» ԱՄՍԱԳՐԻ ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ


Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Հ. (գեղարվեստական խմբագիր). ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ. ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Լ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Տ. (պատասխանատու քարտուղար). ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41

Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06։

ՎՖ 01607։ Պատվեր 553. Տպաքանակ՝ 9000։ Տպագրական 5 մամուլ։ Ստորագրված է տպագրության 8/V 1961 թ.։ ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ Երևան, Տերյան 91։

Գինը 20 կ.։




# ՉԻՆԱԿԱՆ ՀՆԱԳՈՒՅՆ ԽՆԴԻՐ



## ԳՏԵՔ ՊԱՏԱՍԽԱՆԸ

Ռուսաստանում թվաբանության առաջին դասագիրքը գրել է Լ. Ֆ. Մագնիցկին 1703 թ.: Ահա մի խնդիր այդ դասագրքից:

«Հայրը տղային տարավ ուսումնարան և հարցրեց դասատուին.

— Քանի՞ աշակերտ ունես:

Դասատուն պատասխանեց.

— Եթե ուսումնարան ընդունվեն այնքան նոր աշակերտ, որքան հիմա ունեմ, հետո էլ կեսի չափ, ապա մեկ քառորդի չափ, քո տղան էլ հետները՝ կլինեն հարյուր աշակերտ»:

Քանի՞ աշակերտ կար ուսումնարանում:

## ԿԱՐՈ՞Ղ ԵՔ...

45 ձին տեղավորել 9 վագոնում այնպես, որ յուրաքանչյուր վագոնում լինեն տարբեր քանակությամբ ձիեր:

Մի գյուղացի ուզեց շուկա տանել իր ապրանքը: Բայց նա այնքան աղքատ էր, որ միայն մեկ պարկ ուներ: Դրա համար նախ պարկի մեջ լցրեց բակլան, կապեց թելով, ապա լցրեց բրինձը:

Ճանապարհին նա հանդիպեց մի պանդոկատիրոջ, որն ուզում էր գյուղացուց գնել միայն բակլան: Սկսեցին մտածել, թե բրնձի տակից ինչպես հանեն բակլան: Պանդոկատերը չէր ուզում իր պարկը տալ գյուղացուն, իսկ գյուղացին էլափսոսում էր մաքուր բրինձը լցնել գետնի վրա: Երկար մտածելուց հետո, գյուղացին ասաց՝ գտա: Ինչպե՞ս նա լուծեց այդ դժվար խնդիրը:

## ՔԱՆԻ՞ ՏԵՏՐ

Տետրը կշռում է 30 գրամ: Եթե ձեր դպրոցի ամեն մի պիոները հանձնի 1 կիլոգրամ թղթի մակուլատուրա, քանի՞ տետր կստացվի: Հայտնի է, որ 1 կգ մակուլատուրայից կարելի է ստանալ մոտավորապես 500 գրամ մաքուր թուղթ:

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԲՈՒՍԱԿԱՆ-ԿԵՆԴԱՆԱԿԱՆ ԱՇԽԱՐՀԸ

(խաղ)



Սպիտակ ստվարաթղթից կտրել 25 սմ երկարությամբ և 6 սմ լայնությամբ 15 հատ խաղաթուղթ: Ապա սև մատիտով ամեն մեկը բաժանել 5 հավասար մասի և խաղը դասավորությամբ նկարել մրգեր, ծաղիկներ, հացահատիկային և բանջարանոցային բույսեր, ընտանի և վայրի կենդանիներ ու թռչուններ, ինչպես ցույց է տրված այս նկարում:

Հետո պետք է պատրաստել 5 սմ երկարությամբ և 4 սմ լայնությամբ 75 հատ փոքր խաղաթղթեր ու ամեն մեկի վրա գրել որևէ բույսի կամ կենդանու անուն, որոնք նկարված են խաղաթղթերի վրա:

Այժմ կարելի է սկսել խաղը: Խաղավարը մի փոքր տոպրակի մեջ լցնում է 75 խաղաթղթերը, ապա մեկ-մեկ հանում և կարդում, իսկ խաղացողները հետևում են իրենց առաջ դրված մեծ խաղաթղթերին:

Եթե խաղավարն ասում է «խնձոր», նա, ում խաղաթղթի վրա է նկարված խնձորը, խաղավարի ձեռքից վերցնում է փոքր խաղաթուղթը և դնում «խնձորի» վրա:



Հաղթում է նա, ում խաղաթղթի հինգ վանդակներն էլ ամենից շուտ են ծածկվում փոքր խաղաթղթերով: Կարելի է խաղը շարունակել և որոշել, թե ով է գրավում 2-րդ կամ 3-րդ տեղը:

ՎԱՐԴԱՆ ՊԵՏՐՈՍՅԱՆ



# ՆԿԱՐՈՒՄ ԵՆ ՄԱՆՈՒԿՆԵՐԸ

«Պարող տղա»
ԵՂԻԿՅԱՆ ԱՇՈՏԻԿ
(Երևան, 4—տարեկան)

«Արևոտ օր»
ԿԱՐԱՊԵՏՅԱՆ ԵՎԳԵՆՅԱ
(Երևան, Աբեղյանի անվ. դպրոց, 2-րդ դաս.)

